# ԱՄԵՆԱԵՐՋԱՆԻԿ ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ԵՐԳԸ

*Ն. ՍԱԿՈՆՍԿԱՅԱ* *Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



Չկները չեն այդ սուզվում լճակում,
Այդ մանուկներն են խաղում պարտեզում.
Ամենաուրախ,
Ամենասիրուն,
Ամենապայծառ
Մանկապարտեզում:
Որքան արևը ունի վառ շողեր,
Այնքան մենք ունենք երգեր ու խաղեր.
Ամենաուրախ,
Ամենասիրուն,
Ամենապայծառ
Երգեր ու խաղեր:
Որքան ավազ կա ծովի հատակում,
Այնքան մանուկներ՝ մեր Հայրենիքում.
Ամենաուրախ,
Ամենասիրուն,
Ամենապայծառ
Մեր Հայրենիքում:
Որքան գետակ է ձորերում հոսում,
Նույնքան ջերմ երգ է Ստալինին հյուսվում.
Ամենաուրախ,
Ամենասիրուն,
Ամենապայծառ
Երգեր են հյուսվում:

Թարգմ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ








*Լենինի–Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 10

**ՀՈԿՏԵՄԲԵՐ**

1952 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

«Հանրակրթական դպրոցի սոցիալիստական դաստիարակչական նշանակությունն է՛լ ավելի բարձրացնելու և միջնակարգ դպրոցի շրջանավարտների համար պրոֆեսիայի ազատ ընտրության պայմաններ ապահովելու նպատակով, ձեռնամուխ լինել միջնակարգ դպրոցում պոլիտեխնիկ ուսուցման իրագործմանը և անցկացնել ընդհանուր պոլիտեխնիկ ուսուցման անցնելու համար անհրաժեշտ միջոցառումներ»:

(ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԻՑ)

Այս ուսումնական տարում շատ երեխաներ ընդգրկվել են արհեստագործական ուսումնարաններբ: Նկարում՝ Երևանի Արհեստագործական 2-րդ ուսումնարանն ընդունված մի խումբ երեխաներ դազգահի առաջ:

Ֆոտո Լ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

# ՊՐԱԿՏԻԿԱՅՈՒՄ

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. ԳՐ. ԱՂԱՍՅԱՆԻ

Մի անգամ դպրոց գնալիս Վասյան տեսավ, որ կառուցման պետ Գյորգի Պետրովիչ Բակլանովը, այդ կոփված շինարարը, որ ամբողջ երկրում հայտնի էր Հեռավոր Արևելքում, Հյուսիսում և Միջին Ասիայում կատարած իր կառուցումներով, կանգնել է դպրոցի ցանկապատի մոտ և ժպտալով դիտում է երեխաներին։ «Այնքան էլ սարսափելի մարդ չէ,— մտածեց Վասյան.— զարմանալի է, ինչո՞ւ են երեխաներն այդքան վախենում նրանից»։

Եվ հենց այդտեղ էլ որոշեց խոսել Բակլանովի հետ։

Հաջորդ անգամ, նկատելով պետին ցանկապատի մոտ, Վասյան համարձակ մոտեցավ նրան և բարձր ձայնով ասաց.

— Բարև Ձեզ, Գյո՛րգի Պետրովիչ։

Անսպասելիությունից պետը կտրուկ շուռ եկավ. ժպիտը մի ակնթարթում անհետացավ նրա դեմքից. բայց տեսնելով Վասյային, մեղմորեն ասաց.

— Բարև, պիոնե՛ր։

Օգտվելով առիթից, Վասյան պատմեց, որ ինքը վաղուց երազում է մասնակցել կառուցման աշխատանքներին, բայց իրեն ոչ ոք չի ուզում լսել, և խնդրեց աշխատանքի ուղարկել։

— Հապա ո՞վ պետք է սովորի,— խըստորեն հարցրեց պետը։

— Դե՜, ես հիմա հո չեմ ուզում աշխատել, Գյորգի Պետրովիչ. ամառը, երբ արձակուրդներ կլինեն և գործ չեմ ունենա անելու։

— Է՜, մինչև արձակուրդները դեռ ամբողջ կես տարի կա։ Այն ժամանակ կգաս՝ կմտածենք. իսկ հիմա՝ վազիր դպրոց։

Եվ պետը դանդաղ քայլերն ուղղեց դեպի շինարարության վարչություն։

Այժմ, ներկայանալով պետին, Վասյան մտաբերեց իր այդ հանդիպումը և, ցանկանալով այդ մասին հիշեցնել նրան, ավելացրեց.

— Երեկ հանձնեցի վերջին քննությունը. հիմա ես ութերորդ դասարանի աշակերտ եմ։

— Այդպե՞ս, ե՞ս եմ ասել՝ «կգաս՝ կմըտածենք»... Հը՞մ... իսկ քանի՞ տարեկան ես։

— Տասն... Այսինքն աշնանը կլինեմ տասնվեց տարեկան։

— Ա՜...— մտմտաց պետը.— ասում ես շա՞տ ես ուզում աշխատել։

— Շա՜տ, Գյորգի Պետրովիչ։ Միայն ամառը։ Ենթադրենք, թե պրակտիկայում եմ։

Բակլանովը քորեց ականջի ետևը, ապա հարցրեց.

— Կուզեի՞ր զոդող դառնալ։

— Էլեկտրական զոդո՞ղ։

— Իհարկե։

— Ուզում եմ։

Պետը վերցրեց հեռախոսափողը և ինչ-որ մեկին ասաց.

— Հիմա ձեզ մոտ կգա Վասիլի՜... ա՞...

— Միխայլովը,— հուշեց Վասյան։

— ...Միխայլովը,— շարունակեց պետը, ուրախ աչքով անելով Վասյային։— Դուք նրան ընդունեցեք արմատուրային ցեխ որպես աշակերտ։

Այսպես, Վասյան դարձավ էլեկտրազոդող Մարիա Պոկրովսկայայի աշակերտը։

Աչքաբաց, հնարամիտ Վասյան ընդունակ աշակերտ դուրս եկավ։ Նա ուշադիր հետևում էր Մարիայի յուրաքանչյուր շարժմանը, բազմաթիվ հարցեր էր տալիս, իսկ երեկոները մինչև ուշ գիշեր էլեկտրազոդողի աշխատանքին վերաբերող գրքեր էր կարդում։ Բայց բանն առանց արկածի գլուխ չեկավ։ Մի անգամ Վասյան վահանիկը չգտավ և Մարիայի աշխատանքն սկսեց դիտել առանց պաշտպանական ապակու։ Երբ ուրախ ու բարեհոգի Մարիան նկատեց այդ, թափահարեց ձեռքերը և գոչեց.

— Ի՞նչ ես անում. ուզում ես աչքերդ վնասե՞լ։

Եվ, իսկապես, երկու ժամ չանցած Վասյայի աչքերը կարմրեցին, սկսեցին ուժեղ ցավել. աչքերից անընդհատ արցունք էր հոսում։ Նրան պառկեցրին մութ սենյակում և աչքերին չորի թաց կտորներ դրեցին։

Վերջապես եկավ այն օրը, երբ Մարիան թույլատրեց Վասյային վերցնել էլեկտրաբռնիչը և զոդել մի ոչ շատ մեծ կար։ Հուզմունքից Վասյայի ձեռքերը նույնիսկ դողում էին, իսկ կարն ստացվում էր մեկ բարակիկ, մեկ հաստ, մեկ նեղ, մեկ լայն. տեղ-տեղ երևում էին ծակեր, հետո ճեղքվածքներ էլ երևացին։

Վասյան մի կողմ դրեց էլեկտրաբռնիչը և ծանր շունչ քաշելով, ասաց.

— Է՛հ, ինձանից զոդող դուրս չի գա։

— Դուրս կգա,— հաստատ և համոզված վրա բերեց Մարիան։— Ի՞նչ է, կարծում ես իմ առաջին կարերն ավելի լա՞վ էին։

Վասյան կրկին ձեռքն առավ բռնիչը, իսկ Մարիան սկսեց հետևել նրա աշխատանքին։

— Մի՛ հուզվիր... Ամուր պահիր... Էլեկտրոդի ծայրը դանդաղ շարժիր... Ա՛յ, այդպես... Աղեղը փոքրացրու...

Ավելի ու ավելի լավ կարեր էին ստացվում։ Պատահեց այնպես, որ Վասյան զոդեց մի հարթ ու գեղեցիկ կար և, ցած դնելով վահանը, սկսեց հիանալ իր աշխատանքով։

— Ապրե՜ս։ Խոսք չկա, լավ կար է,— հանկարծ իր ետևից լսեց Վասյան։ Նա շրջվեց և իր մոտ տեսավ շինարարության պետին, բաժանմունքի ինժեներին ու Մարիային։

Վասյան ուրախ էր, ամաչելուց կախեց գլուխը և նույնիսկ բարևը մոռացավ։

— Ես կարծում եմ,— ասաց Բակլանովն ինժեներին,— արդեն կարելի է նրան ինքնուրույն փոքրիկ աշխատանքներ հանձնարարել։ Միայն, Պոկրովսկայայի հսկողությամբ։

Մինչև հիմա էլ Վասյան այդ օրը համարում է իր կյանքի ամենաերջանիկ օրերից մեկը։ «Ինքնուրույն աշխատանքնե՜ր»... կատա՞կ եք կարծում. այն էլ, երբ այդ ասում է ինքը՝ պետը։ Իսկ չէ՞ որ վաղուց չէր, որ Վասյան առաջին անգամ ոտք դրեց արմատուրային ցեխը։

Արմատուրային ցեխը, որտեղ աշխատում էր Վասյան, գործարանի սովորական ցեխերի նման չէր։ Դա մի մեծ հրապարակ էր, լցված ամենատարբեր հաստության ունեցող մետաղյա ձողերով։ Այնտեղ կային Վասյայի մատի հաստությամբ ձողեր, կային և այնպիսիները, որոնք չէին զիջում հեռագրասյուներին։ Ցեխի բանվորները դիզում էին դրանք իրար վրա, հետո կտրտում պետք եղած չափերով, ապա ծռում, զոդում, դարձնում հսկայական կոնստրուկցիաներ, որոնք նման էին մետաղալարերից պատրաստված զամբյուղների։ Այդպիսի յուրաքանչյուր զամբյուղը կշռում էր 20, երբեմն էլ՝ 30 տոննա։



Վասյան սիրում էր նայել, թե ինչպես հսկայական ամբարձիչ կռունկները հեշտությամբ վերցնում են կառուցվածքները և բարձում երկաթուղային հարթակների վրա։ Այնտեղ, շինարարության մյուս ծայրում, այդ կառուցվածքներից պատրաստվում է

էստոկադան՝ ամբարտակի մետաղյա հիմքը։

Այժմ այդ կառուցվածքների մեջ են նաև Վասյայի զոդած կարերը։ Ճիշտ է, շատ շուտով այդ կառուցվածքները, կարերի հետ միասին, պետք է ծածկվեն բետոնով, բայց չէ՞ որ հաճելի է իմանալ, որ վիթխարի ամբարտակի մարմնի մեջ կա նաև քո, թեև ոչ մեծ աշխատանքը, քո ձեռքերով զոդված կարերը։

Վասյան հիմա ստանում է աշխատանքային կարգագրեր, ինչպես և տեխնիկական քարտեզներ, որոնց մեջ նշված է ամեն ինչ՝ և՛ կարերի դասավորությունը, և՛ նրանց չափերը, և՛ զոդման ռեժիմը։ Հուլիսին Վասյան կատարեց չափահաս մարդու նորմայի 73 տոկոսը և ստացած դրամով մոր համար նոր կոշիկներ գնեց։

Մոտենում էր ուսումնական տարվա սկիզբը։ Վասյան ափսոսում էր թողնել աշխատանքը, բայց և ցանկանում էր օր առաջ լինել դպրոցում, դասարանում, ընկերների հետ։

Սեպտեմբերի հինգին շինարարության ակումբում հրավիրվեց օգոստոս ամսվա աշխատանքների ամփոփմանը նվիրված ժողով։ Այդ ամսում արմատուրային ցեխը նվաճեց կառուցման փոխանցիկ կարմիր դրոշը։ Ժողովի էր եկել նաև Վասյան։ Եկել էին դպրոցի շատ ուրիշ տղաներ ու աղջիկներ։ Վասյան հոր և մոր հետ տեղավորվել էր առաջին կարգում։ Այդ օրը նա առաջին անգամ հագել էր թավշյա նոր վերնաշապիկը։

Բեմում, կարմիր քաթանով ծածկված սեղանի շուրջը նստել էին կառուցման պետը, գլխավոր ինժեները, պարտկազմակերպիչը, բաժանմունքի պետեր և ինժեներներ, ստախանովականներ։ Հանկարծ Բակլանովը իր մոտ կանչեց Վասյային։ Վասյան զգուշորեն մոտեցավ բեմին։ Գյորգի Պետրովիչը կռացավ, բռնեց նրա ձեռքը և քաշեց վեր, նստեցրեց իր կողքի ազատ աթոռին։

Վասյային թվաց, թե այդ մեծ դահլիճում հավաքված բոլոր մարդիկ նայում են միայն իրեն։ Ակամայից ցանկություն առաջացավ թաքնվել որևէ տեղ՝ սեղանի տակ, կարմիր ծածկոցի ետևը։ Համարձակություն էր ներշնչում Վասյային միայն այն բանը, որ Գյորգի Պետրովիչը երբեմն խոսում էր իր հետ և շոյում գլուխը։

Զեկուցեց շինարարության գլխավոր ինժեները։ Նա խոսեց կառուցման նշանակության մասին, այն մասին, որ դեռևս շատ անելիքներ կան, և որ ժամանակը կարճ է և հարկավոր է ավելի լավ աշխատել։ Հետո նա կարդաց սոցիալիստական մրցության առաջավորների ցուցակը։ Երբ գլխավոր ինժեներն ասաց. «Շինարարության էլեկտրազոդողների շարքում առաջին տեղը...»,— Վասյան նույնիսկ ոտքի կանգնեց. իսկ երբ ինժեները կարդաց՝ «...նվաճեց Մարիա Պոկրովսկայան, որն իր ամսվա նորման կատարել է 317 տոկոսով», Վասյան առաջինն սկսեց ծափահարել։ Նրան հետևեցին մյուսները, ամբողջ դահլիճը։

Գլխավոր ինժեներից հետո ամբիոն բարձրացավ Բակլանովը։ Դահլիճը վայրկենապես հանդարտվեց։ Շինարարության պետին բոլորը սիրում էին և վախենում։ Եթե հայհոյում է, ապա միայն գործի համար է հայհոյում, իսկ լավ աշխատեցիր՝ անչափ կգովի։

— Մեր արմատուրային ցեխը նվաճեց փոխանցիկ դրոշը,— ասաց Բակլանովը։— Ապրե՛ք։ Սակայն արմատուրային ցեխում դեռևս կան մարդիկ, որոնք այնքան էլ լավ չեն աշխատում։ Մարիա Պոկրովսկայան իր նորման կատարել է 317 տոկոսով, իսկ Սիդորովը միայն 82 տոկոսով։ Ինչի՞ նման է այդ, ընկերնե՛ր։ Ինչպե՞ս անհարմար չի զգում Սիդորովը։ Չէ՞ որ նրա կողքին բոլորը գերակատարում են իրենց նորմաները, իսկ մի աղջիկ, կոմերիտուհի, զոդում է նրանից չորս անգամ ավելի...

Բարձրացավ ընդհանուր ծիծաղ։ Վասյան փնտրեց և դահլիճում գտավ Սիդորովին։ Նա ամբողջովին կարմրատակել էր և տաքացած ինչ-որ բան էր ապացուցում իր հարևանին՝ վարչության շոֆերին։

— Թող նա օրինակ վերցնի թեկուզ և մի այլ զոդողից,— շարունակեց պետը,— աշակերտ Վասիլի Միխայլովից...

Դահլիճում սկսեցին աղմկել։ Վասյային թվաց, թե իր աթոռը ինչ-որ անհարմար է, կարծես ինքը կանգնած է մի շատ վատ տեղում և տեսանելի է ամենքին։ Հակառակի

պես ինչ-որ մեկն էլ բարձրաձայն հարցրեց.

— Իսկ ո՞վ է Վասիլի Միխայլովը։

— Ով է՞,— աղմուկի մեջ կրկնեց պետը և պատասխանեց.— ահա այս տղան, որ նստած է նախագահության սեղանի մոտ։ Նա ամբողջ ձմեռը սովորել է դպրոցում, և լավ է սովորել, իսկ ամառը ձեռք բերեց էլեկտրազոդողի մասնագիտություն։ Երեկ պլանային բաժինն արձանագրեց, որ օգոստոսին Վասյան կատարել է չափահաս մարդու նորմա՝ 106 տոկոսով։

Դահլիճում աղմուկն ուժեղացավ։ Ոմանք ծիծաղում էին, մյուսները հիացական բացականչություններ էին արձակում, իսկ երրորդները, իրենց տեղերից բարձրացած, ջանում էին ավելի լավ տեսնել Վասյային։ Վասյան նեղվում էր տոթից, թեև դահլիճում այնքան էլ շոգ չէր։ Բարեբախտաբար Մարիա Պոկրովսկայան, որ նստած էր նրա կողքին, ջրամանից ջուր լցնելով բաժակը, մեկնեց տղային։

Պետը ձեռքը բարձրացրած սպասում էր։ Երբ դահլիճը բոլորովին հանդարտվեց, նա շարունակեց.

— Հենց նոր Վասյայի հայրն ինձ ասաց, որ մի շաբաթից հետո լրանում է տղայի տասնվեց տարին։ Նա արդեն դիմել է ԼԿԵՄ շարքերն անցնելու համար... Ուզում եմ այստեղ, բոլորի ներկայությամբ ասել Վասյային, որ ես ինքս առաջինն եմ երաշխավորում նրան։ Թող այդ լինի իմ նվերը նրան, թող նրա մուտքը կոմերիտմիության մեջ նշանավորվի կոմունիզմի մեծ կառուցման աշխատանքներին ցուցաբերած նրա մասնակցությամբ... Ապրես, Վա՛սյա...

Բուռն ծափահարությունների մեջ համարյա անլսելի մնացին պետի վերջին խոսքերը. ամբողջ դահլիճը ոտքի կանգնած ծափահարում էր։ Իջնելով ամբիոնից, Գյորգի Պետրովիչը մոտեցավ Վասյային և ամուր գրկեց նրան։



# ԱՇՈՒՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Անցել է ամառն արևն
Ու տարել իր հետ վարդեր,
Բազմել է մեր մայր հողին
Աշունը՝ խարտյաշ, դեղին:
Մեր գյուղում հողն են հերկում,
Արտերում երազ, եռանդ,
Եվ իջնող աշնան գրկում
Դեղնում է և՛ դաշտ, և՛ հանդ:
Ծառերի աչքեր դառած
Մրգերն են նայում ներքև,
Քամին է շարժում կամաց
Մեր այգին դեղնատերև:

Աղմուկ է, աղմուկ՝ գյուղում,
Տոնական հանդես մի վառ,
Կանչում է ներքին թաղում
Մի տղա օղակավար:
— Ա՛յ, Մուշե՛ղ, Ալե՛ք, Արե՛գ,
Կարապե՛տ, ուստա՛ Մակար,
Եկեք ձեր բերքը տարեք,
Պահեստում էլ տեղ չկա:
— Ո՞ւր տանենք, ընկեր Եզո՛ր,
Ոչ մի տեղ չկա համար,
Դեռ լի է ամբար ու հոր
Բերքերով անցյալ տարվա:

# ԱՄԱՌԱՆՈՑԸ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

*Դպրոցի պահակը աշակերտներին դուրս արեց բակից, խարխուլ դուռը փակեց և տնքալով մի մեծ քար տեղավորեց նրա ետևը։*

*Այսպիսով էլ ավարտվեց Թեհրանի ծայրամասում գտնվող տարրական դպրոցներից մեկի ուսումնական տարին։ Բակում խաղալու ամեն մի հույս չքացավ. «փականքը» դրված էր։ Սակայն երեխաներից շատերը մնացին. դեռ ուզում էին որևէ խաղ կազմակերպել փողոցում։ Դա մի տեսակ հրաժեշտի հավաք էր, որ տեղի էր ունենում ամեն տարի դպրոցի պատերից դուրս։*

*Հադին չմնաց խաղալու։ Գնահատականների թերթիկը թևի տակ ամուր սեղմած, նեղլիկ փողոցներով, լայն կոշիկները քըստքըստացնելով, երբեմն բարձրանալով մինչև տնակների կտուրները, երբեմն էլ մրջյունի պես կորչելով նրանց արանքում տուն էր վերադառնում։*

*Կես ժամ է արդեն, որ երրորդ դասարանի աշակերտ է համարվում նա։ Դա իհարկե մեծ բան է։ Ի՜նչ համեմատություն երկրորդ դասարանի հետ։ Բոլոր գաղտնիքները թաքնըված էին երրորդ դասարանում։ Նույն այդ գաղտնիքներով և հրաշքներով լցվել էր աշխարհը։ Եվ երրորդ դասարանի աշակերտ Հադին իր երևակայությամբ արդեն բաց էր արել նրա դռները։ Ոչ մի ճիգ։ Միայն պետք էր ցանկանալ. բավական էր շարժել ճանապարհի եզրին ընկած պատահական քարը և նրա տակից կհոսեին անսպառ գանձերը. բայց և այնպես նա չէր դիպչում ոչ մի քարի։*

*Ահա նա մոտվի հասավ իրենց խրճիթը և սկսեց երազել... Հողե հատակին փռվեց մի լայն և գեղեցիկ գորգ՝ իր հոր գործած լավագույն գորգը։ Սենյակը ողողվեց արևի ճառագայթներով։ Նրա երկու անկյունում տեղավորվեցին տեսչանոցի պահարանն ու փափուկ բազկաթոռը, որի վրա նստեց հայրը և գոհունակությամբ սկսեց ծխել իր ծխամորճը։ Նասերը միանգամից առողջացավ և կտուրի եզրին նստած, նրանք սկսեցին խոսել նույն բարդ և կարևոր խնդրի մասին, որի մասին խոսում էին ուսուցիչները ընդմիջումների ժամանակ։ Բայց երազներն իսկույն ընդհատվեցին, երբ նա կտուրի վրա նկատեց եղբոր՝ Նասերի երկարավուն և գունատ դեմքը։ Նասերը իր բարակ և թույլ ձայնով հարցրեց.*

*— Հադի՛, փոխադրվեցի՞ր.*

*— Այո, Նասե՛ր։*

*— Ի՜նչ լավ...*

*Հադին կոշիկները վեր նետեց, ապա բռնելով եղբոր պարզած նիհար և երկար ձեռքը, վեր բարձրացավ։*

*Եղբայրները ծալապատիկ նստեցին տան կտուրին։ Նասերը գլուխը կախ գցած, բարակ ցուցամատով սկսեց ինչ-որ թվանշաններ գծագրել։ Նա սպասում էր, որ եղբայրը համոզի և հանգստացնի իրեն։ Չէ՞ որ ինքը ևս կարող էր սովորել։ Նա այսօր չորրորդ դասարանում կլիներ, եթե ստիպված չլիներ օգնել հորը ապրուստի միջոց վաստակելու համար, եթե չմահանար մայրը, եթե ինքը չհիվանդանար։ Հադին հասկանում էր նրան։ Նա ասաց.*

*— Գիտես, Նասե՛ր... շատ հեշտ է փոխադրվելը։ Իսկ դու, դե բոլորը ջրի պես գիտես.— նա մի րոպե լռեց, ապա ավելի լրջանալով ասաց,— ա՛ռ, գնահատականները թող քեզ մոտ մնան։*

*Նասերի աչքերը ուրախությունից փայլեցին. գույն և շառագունեցին նրա այտերը։ Նա շատ էր հյուծված, փոքր եղբոր կենսունակությունն ու համարձակությունը միշտ էլ համակում էին նրան։ Նա մոռացել էր, որ ինքը մեծ էր եղբորից, երկու տարի է, ինչ նա դադարել էր մեծանալուց. չէ՞ որ հիվանդացել և չէր կարողացել ավարտել երկրորդ դասարանը. եղբայրը աճել ու անցել էր նրանից։ Նա ուրախությամբ ընդունեց եղբոր նվերը և ամբողջովին կլանված սկսեց թերթել փոքրիկ գրքույկը։*

*Հարթ երկնակամարի վրա արևը սահելով ընկավ լեռների ետևը, բոցավառվեց ու մարեց։ Մութ խրճիթներից և բակերից խավա-*

րի մշուշը բարձրացավ և տարածվեց քաղաքի վրա։ Նրա հսկա զանգվածը երերաց, ձուլվեց և հոսեց մի մեծ գետի պես։ Հեռվում՝ լեռների ստորոտում, մուգ անտառախմբերը ջրի մեջ ընկած թանաքի կաթիլների պես միաձուլվեցին և տարածվեցին լեռների վրա։ Երեկոն այնքան շուտ եկավ, որ եղբայրները զարմացան, նկատելով, թե ինչպես արդեն բոլորովին մթնել էր։

Նրանք իջան խրճիթը, վառեցին նավթի փոքրիկ ճրագը և սպասեցին հոր վերադարձին. բայց հայրը ուշացավ։ Այդ երեկո առանձնապես նկատելի էր նրա բացակայությունը։ Նասերը գիշերը տաքություն ուներ. նա հաճախ վեր էր կենում և զարթնեցնում եղբորը.



— Ապա մի ստուգիր, կարծես մոռացել եմ աղյուսակը.

Հաղին տրորում էր աչքերը և սկսում էր հարցեր տալ։ Նասերը ճգնում, կիտում էր հոնքերը, տատանվում էր և շփոթվում։ Քիչ հետո անբավարար իր տված պատասխանից, բարձի տակից հանում էր գնահատականները և չնայած արդեն բերանացի գիտեր բոլորը, ստուգում էր թվաբանության առարկայից նշանակված գնահատականը և ուրախանում էր, նկատելով բարձր ցուցանիշը։ Ապա երազների քողի տակ նրանք նորից քուն էին մտնում։

Աշխատանքից հոգնած հայրը, տուն վերադարձավ ուշ գիշերը։ Կիսարթուն վիճակում Հաղին զարմացավ, զգալով՝ ինչպես հայրը մոտեցավ շոյեց տղաների գլուխները, փչեց ճրագը և պառկեց քնելու, առանց նկատելու, որ հատակը գորգապատ էր, նավթի ճրագի փոխարեն կախված էր էլեկտրական լամպը, առաստաղն ավելի էր բարձրացել, իսկ իրենք պառկած էին փափուկ և լայն անկողիններում։

Երազները հեռացել, հասել էին հորիզոնին, լեռների գագաթներին և վաղ թե ուշ շրջվելու էին մյուս՝ հեքիաթային աշխարհի կողմը։ Ու Հաղին զարմանում էր, թե ինչո՞ւ իրե՜ն այնքան մոտ երազներին նա չհանդգնեց պարզելու իր ձեռքը։ Նա պարզ տեսնում էր, թե ինչպես Նասերի դեմքն ավելի էր փոքրացել, իսկ շարժումները դարձել էին երկչոտ։ Թվում էր՝ նա մի բան էր ուզում հարցնել, բայց չէր համարձակվում։

Մի գիշեր նա կամացուկ ասաց հորը.

— Գիտես, հայրի՛կ, Նասերը շատ է ուզում առողջանալ։

— Գիտեմ,— պատասխանեց հայրը։

Հաջորդ օրը հայրը աշխատանքի մեկնելիս Նասերին ծանոթ բժշկի մոտ տարավ և խնդրեց, որ քննի տղային։ Հաղին կտուրի ծայրին նստած անհամբեր սպասում էր եղբորը։ Երբ նա հեռվից տեսավ նրան, ցած իջավ և ընդառաջ վազեց.

— Դե՛հ, ի՞նչ ասաց բժիշկը, Նասե՛ր։

Նասերը շատ տխուր էր։

— Բժիշկն ասաց, որ իմ դրությունը լուրջ է... Հիշո՞ւմ ես...

Իրենց մոր մասին էլ նույն բանն էր ասել բժիշկը։ Քիչ հետո Հաղին նորից հարցրեց.

— Իսկ ոչ մի դեղ չտվե՞ց։

— Ոչ։ Միայն ասաց, որ ինձ պետք է անպայման ամառանոց ուղարկեն։ Ուրեմն եթե ինձ ամառանոց ուղարկեն՝ կառողջանամ, այնպես չէ՞, Հաղի՛։

— Իսկ ո՞րտեղ է այդ ամառանոցը։

— Չգիտեմ... ասաց... Շեմրանում...

Հաղին ուրախությունից կորցրեց իրեն.

— Բայց չէ որ Շեմրանը մոտ է... այս-

տեղ լեռներում... Նա մեր կտուրից էլ երևում է,— նրանք արագ բարձրացան կտուրը.— ա՛յ, նայիր, լեռների ստորոտում նա է՝ Շեմրանը, մեր կտուրից էլ երևում է։ Ի՞նչպես մինչև այսօր չգիտեինք, որ մեր կտուրից երևում է ամառանոցը...։

Բայց Նասերին ամառանոց ուղարկելու համար փող էր հարկավոր։ Հայրը ստիպված էր ավելի շատ աշխատել։ Նա ամբողջ



շաբաթ տնից բացակայում էր. տուն էր վերադառնում միայն հինգշաբթի երեկոները։

Հադին ևս աշխատանքի անցավ։ Նա մի մեծ պարկ շալակած թափառում էր փողոցներում և իր մանկական ծորուն ձայնով կանչում էր.

— Աղբ ենք թափո՞ւմ, ավազան մաքրո՞ւմ...

Երեք շաբաթ է անցել, բայց նրան ընդամենը չորս անգամ են կանչել։ Նա վաստակել է մի քանի պղնձադրամ։

Եվ նա շատ հաճախ մտածում է.

«Ո՞ւր է արդյոք այն միակ կախարդական քարը, որի տակ թաքնված են երջանկաբեր գանձերը»։

Ու պարկը մեջքին նա կտրում անցնում է բազմաթիվ փողոցներ, կանգ է առնում դռների առաջ, նայում է ցանկապատերից ներս։ Եվ երբ նկատում է վաճառականների լավ հագնված տարեկից երեխաներին, հետևում է նրանց, ուշադիր լսում նրանց խոսակցությունը և համոզում է իրեն, որ նրանք բոլորն էլ ամառանոցում են այդպես առողջացել, կազդուրվել և այդ րոպեին էլ նորից ամառանոց են շտապում։ Եվ նա անսպասելի կերպով հանկարծ կանչում էր.

— Աղբ ենք թափո՞ւմ, ավազան մաքրո՞ւմ...

Բայց նրա վրա ուշադրություն չեն դարձնում։ Նա նորից է կանչում, ավելի բարձր, բողոքում է, վրդովվում, պահանջում է, որ լսեն իրեն, բայց քաղաքի ժխորի մեջ խեղդվում է նրա ձայնը։ Նա հաճախ հենց այնպես, չնչին վարձատրությամբ հավաքում է փողոցի անկյուններում կուտակված աղբը և տանում է թափելու քաղաքից դուրս գտնվող ընդարձակ դաշտում։ Տափաստանի հազիվ զգացվող քամին օրորում է հեղուկի նմանվող ծանր տոթը։ Հադին նայում է անծայր տափաստանին և մտածում, որ ամառանոց գնալու համար ինքը պետք է աղբով լցնի այդ ողջ տափաստանը, իսկ իր հայրը պետք է գործի այդ տափաստանի չափ մի մեծ գորգ։ Երբ երեկոյան նա տուն է վերադառնում, Նասերը խնդրում է նրանից.

— Էլ մի՛ գնա, Հադի՛, ավելի լավ է կտուրից նայենք ամառանոցին։

Բայց Հադին համառում է։ Ապա նրանք նայում են հեռու, մշուշի մեջ թաղված ամառանոցին, որ վերջերս կարծես ավելի էր հեռացել քաղաքից։ Հետո Նասերը պատմում էր, թե ինչպես այդ օրը կտուրի վրայից ամառանոցում նկատել է մի գեղեցիկ լճակ, որը փայլել է մի վայրկյան ու անհետացել։

Մի անգամ քաղաքում թափառելիս Հադին իմացավ, որ ամառանոցը քաղաքից այնքան էլ հեռու չէ։ Կան մարդիկ, որոնք

հաճախ ոտքով այնտեղ են գնում և վերադառնում։

Այդ գիշեր նա ավելի ուշ քնեց։ Շարունակ մտածում էր։ Վաղ առավոտյան նա վեր կացավ և արթնացրեց եղբորը։

— Վեր կաց, Նասե՛ր, գնում ենք։

— Այդ ինչպե՞ս,— զարմացավ Նասերը։ Նա գիտեր, որ խոսքը ամառանոցի մասին է։

— Ոտքով։

— Իսկ ոտքով գնալ կարելի՞ է։

— Այո, կարելի է։ Կարևորն այն է, որ տեղ հասնենք։

Նասերը շատ ուրախացավ։ Նա արագ բարձրացավ կտուրը։ Ամառանոցն իր տեղումն էր։

Ապա եղբայրները իջան ջրամբարը. լվացվեցին, թրջեցին մազերը, գտան մոր հին սանրը, սանրվեցին, մի-մի կտոր հաց դրեցին ծոցները, բակի դուռը ներսից փակեցին և կտուրի կողմից իջան փողոց։

Նասերը հիացած էր եղբոր գործիմացության և վճռականության վրա. բայց փողոցում նրանք մի պահ շվարեցին։ Բոլորովին մի անծանոթ զգացում էր պատել նրանց։ Բակի դուռը փակ էր, իսկ տանը ոչ ոք չկար։ Բացի այդ իրենց խրճիթը համեմատվում էր հարևան տների հետ ու պարզվում, որ ամենացածրն է և մի փոքր էլ թեք է կառուցված։ Տխուր էր. բայց Հադին հաղթահարեց այդ զգացմունքը։ Նա խստորեն ասաց.

— Գնանք, Նասե՛ր։

Նրանք արագ անցան քաղաքի միջով և երբ հարց ու փորձից հետո գտան դեպի ամառանոց տանող ասֆալտապատ, ծառազարդ խճուղին, հաղթական ու գոհ իրար նայեցին ու քայլեցին առաջ։

Սպիտակին տվող երկնակամարում դժվար էր գտնել արևի գունդը։ Նա ձուլվել, տարածվել էր երկնքում և կրակե անձրև էր թափում չորս կողմը։ Ծառերի ստվերները կծկվել ու կուչ էին եկել բների մոտ։ Ավտոմեքենաները արագ թռչում էին ասֆալտով, իրենց հետ տանելով պատսպարված քառակուսի ստվերները։

Ամառանոցը թաքնվել էր, իսկ հեռում, լայն հորի մեջ ընկած քաղաքից մշուշ էր բարձրանում։

Հադին քայլում էր ճանապարհի եզրի տաք փոշու միջով, կոշիկները թևի տակ դրած։ Նասերը հետևում էր նրան ամբողջովին քրտինքի մեջ կորած ու ծանր հևալով։

Երկու կողմում, պարսպի նման ձգվում էր ծառերի միևնույն շարանը. կարծես նրանք ընկել էին շրջապտույտի մեջ։

Նասերի անվերջ հարցումներին, թե «դեռ շա՞տ ճանապարհ կա», Հադին պատասխանում էր միևնույն վճռականությամբ.

— Կարևորն այն է, որ տեղ հասնենք։

Եվ նրանց ուղեղում շարունակ կրկնվող այդ երկու նախադասությունները խառնվում էին, խճողվում։ Երբեմն Հադիին թվում էր, որ ինքն է հարցնում Նասերից տեղ հասնելու մասին, իսկ Նասերը վճռականությամբ պատասխանում է «կարևորն այն է, որ տեղ հասնենք»։

— Մի քիչ հանգստանանք, Հադի՛։

Հադին ետ նայեց, նրան թվաց, որ ինքը կրկնեց իր խոսքերը։ Իսկ Նասերի ականջներում նորից հնչեցին «կարևորն այն է, որ տեղ հասնենքը», որի իմաստը նա չէր հասկանում արդեն, բայց գիտեր, որ դա նշանակում է «պետք է քայլել»։

Նա մի քանի քայլ էլ արեց, բայց մշուշվող աչքերի առաջ ասֆալտապատ ճանապարհը ռետինի պես ձգվեց։ Նա հուսահատ կանգ առավ և պարանի պես ճոճվեց, իսկ դեղին մաշկի վրա փայլեցին քրտինքի սառը կաթիլները։ Նրանք նստեցին ճանապարհից դուրս, թելի պես ձգվող բարակ առվի եզրին։ Իսկ ավտոները ասֆալտե ճանապարհով նետերի պես թռչում էին և թաքնվում։

Նրանց և այդ զզվելի հարթության մեջ ինչ-որ թաքուն և զուսպ համաձայնություն ու հրճվանք կար։ Կարծես ոչ թե անիվներն էին դառնում, այլ ճանապարհն էր թռցնում, տանում նրանց։ Եվ մեքենաները թռչում էին, կարծես այնտեղ հեռվում մեկը սուր մկրատով կտրում էր ռետինի պես ամուր ձգված ճանապարհը։

Նրանք նորից քայլեցին ուժասպառ, բթացած։ Հիմա նրանք միայն ձգնում էին վերջ տալ այդ քաոսանման ճանապարհորդությա-

նը. իսկ թե ուր պետք է հասնեին, այդ չգիտեին նրանք։

Երբ առաջին անգամ նկատեցին ամառանոցի հրապարակը, ուր շարված էին ավտոմեքենաները, նրանք բնազդաբար արագացրին իրենց քայլերը և գրեթե վազելով հասան ամառանոց. բայց մի պահ նրանք երկյուղի մեջ ընկան նկատելով ոստիկաններին։ Եթե հանկարծ նրանք իմանային, որ իրենք ոտքով են եկել... կամ ո՞վ գիտե գուցե նրանց բռնեին վատ հագնված լինելու պատճառով։ Բայց քիչ հետո նրանք հանդստացան. ամառանոցի փողոցներում շատ մուրացկաններ կային։ Տղաների երկյուղը անտեղի էր, ոստիկանները մինչև իսկ չնկատեցին նրանց։



Նրանք քայլեցին դեպի բլուրները, ուր տեսան շքեղ հյուրանոցներ, իսկ սեղանների շուրջը ճաշում էին բազմաթիվ հարուստ պարոններ ու տիկիններ։

Նրանց հյուրանոց չթողին։ Նրանք, հենց այնպես, ուզում էին միայն մոտիկից տեսնել ամեն ինչ. ուրիշ ոչ մի նպատակ չունեին։

Նրանք շարունակեցին իրենց ճանապարհը և առաջին անգամ իրենց կյանքում տեսան գետակը։ Ջրակի միջով հոսող գետակը, որի վրա երկու կողմերից կախվել էին ժայռերի հսկայական բեկորները։ Սարսափելի էր և հետաքրքիր։ Ու նրանք բադերի պես նետվեցին գետակը։ Սայթաքեցին, վայր ընկան, թրջեցին միմյանց. շատ հաճելի էր։ Հետո թափառեցին լեռներում և նրանց թվաց, որ գտան բոլոր անտառախմբերն ու բարձունքները, որ տեսել էին կտուրից։

Նասերը շատ էր ուզում գտնել այն լճակը, որ ինքը տեսել էր կտուրից, բայց լճակը չգտնվեց։

— Երևի դա շատ է հեռու այստեղից,— ասաց Հադին։

Նասերը տխրեց. չէ՞ որ լճակի վրա նավակներ էլ կլինեին։

Արահետներում և լեռներում ունևորների երեխաներ շատ կային։ Նասերն ու Հադին քայլեցին նրանց հետ կողք-կողքի։ Նրանցից մեկին Հադին ասաց.

— Դու ո՞ր դասարանումն ես։

— Երկրորդ,— հպարտացավ երեխան։

— Իսկ ես երրորդ դասարանումն եմ, եղբայրս՝ Նասերը... այ նա... նա էլ երրորդ դասարանումն է,— հաղթական ասաց Հադին։

— Դա նրանից է, որ դուք տարիքով ավելի մեծ եք ինձանից. ճիշտ է, ես հասակով ավելի բարձր եմ, բայց դուք ավելի մեծ եք ինձանից։ Հայրս ասում էր, որ աղքատ երեխաները չեն մեծանում և հենց բոլոր գաճաճները աղքատ երեխաներ են եղել։

Նասերը շատ տխրեց. բայց Հադին ամեն մի կասկած փարատեց.

— Նա ոչինչ էլ չգիտի. չէ՞ որ նա դեռ նոր է փոխադրվել երկրորդ դասարան։

Հարմար տեղ ընտրելով նրանք պառկեցին և սկսեցին ուտել իրենց չոր հացը։ Հադին հարցրեց Նասերին.

— Հիմա ինչպե՞ս է, գրեթե առողջացել ես, այնպես չէ՞։

— Շատ առողջ եմ,— պատասխանեց Նասերը։

— Այնուամենայնիվ մի քանի անգամ էլ պետք է գանք այստեղ, որպեսզի բոլորովին առողջանաս,— ասաց Հաղին։

Հետո որոշեցին, որ Նասերը պետք է հանձնի երկրորդ դասարանի քննությունները և Հաղիի հետ միասին աշնանը հաճախեն երրորդ դասարան։

Մի անծանոթ թռչուն ինչ-որ մի տեղ կչկչում էր.

— Սա կաչաղա՞կ է, թե՞ հոպոպ,— հարցրեց Նասերը.

— Չգիտեմ,— ծուլորեն պատասխանեց Հաղին։

Չորս կողմը մի հաճելի աղմուկ էր թրթռում, իսկ բարդիների փայլուն տերևները մեղմ զեփյուռից դողդողում էին. հանկարծ մի տերև պոկվեց և օրորվելով ցած ընկավ. «ոչի՜նչ, լավ է, որ առողջացավ Նասերը»...

Երբ նրանք արթնացան բոլորովին մթնել էր. ձորակը լցվել էր օտարոտի ճչուկներով։ Չորս կողմը սև ժայռերն էին, շղարշված խավարի այնպիսի թանձրությամբ, որ կարծես նրանք արդեն պոկվել էին դեպի եղբայրները։ Իսկ բարդիները ճոճվում էին շարունակ ուսուցչի սպառնացող ցուցամատների պես։ Բարեկամի և ոչ մի ձայն չէր լսվում։

Եղբայրները միմյանց ձեռք բռնած, սկսեցին ցած իջնել։ Նրանք խրվեցին սև թանաքի պես հոսող գետի մեջ։ Լպրծուն քարերը գլորեցին նրանց։ Նրանք հազիվ գտան միմյանց, դուրս եկան և սկսեցին վազել փոքրիկ արահետով։ Թվում էր՝ հսկա կաղնիները սուրում էին նրանց ետևից, իսկ բարդիները փորձում էին պոկվել և փակել նրանց ճանապարհը։

Նրանք անցան մեծ հյուրանոցի կողքով, ուր լույսեր էին վառվում և երաժշտության ձայներ լսվում։ Երբ հասան կիսախավար հրապարակը, մեկնում էին վերջին ավտոբուսները։

Եղբայրները կանգնած էին կողք-կողքի, միմյանց ձեռքից բռնած։ Չնայած Նասերը շատ քիչ էր բարձր Հաղիից, բայց նեղ և ցցված ուսերը, երկարավուն գլուխը շատ ավելի բարձր էին ցույց տալիս նրան։

Հաղին իր ձեռքի մեջ զգալով եղբոր այրվող ձեռքը, գուշակեց, որ նրա դրությունը ծանր է։ Նասերը հազիվ էր կարողանում կանգնել։

— Ինձ մոտ երեք ռիալ կա,— ասաց Հաղին,— գնանք, գուցե մեքենավարը համաձայնվի քեզ քաղաք տանել։

Նասերը ընդդիմացավ.

— Ոչ, ոչ, Հաղի՛, միայնակ չեմ ուզում։

Մեքենավարը համաձայնվեց, միայն թե Նասերը պետք է ոտքի վրա մնար, նստարանները զբաղված էին։

Նասերը դեմքը ապակուն սեղմած, նայում էր եղբորը, որը միայնակ կանգնել էր կիսախավար և դատարկ հրապարակում։ Շրջվող մեքենայի ապակու ետևից Նասերի դեմքը ձգվեց և կորվեց։ Լուսավոր պատու-



հանները մի վերջին անգամ էլ երևացին ծառերի միջից և թաքնվեցին։

Հրապարակում ճչուկներն աստիճանաբար վերածվեցին օտարոտի ձայների։ Հաղին լուսնոտի պես դուրս եկավ ճանապարհի վրա։ Հեռվից դեռ լսվում էր մեքենայի աղմուկը։ Նա արագացրեց քայլերը և սկսեց

վազել մեքենայի ետևից, որի աղմուկը վաղուց արդեն չէր լսվում։ Բայց Հաղին վազում էր շարունակ, ականջներում պահելով մեքենայի մոտորի թույլ և հարազատ ձայնը։ Կոշիկները դուրս թռան նրա ոտքերից և մնացին ինչ-որ մի տեղ, խավար ճանապարհի վրա։ Հայրը դիտավորյալ էր հնավաճառից մեծ կոշիկներ գնել. երեք տարվա համար էին դրանք։ Եվ այսօր, եթե նրանք չկորչեին, երկու տարի հետո արդեն ամուր կնստեին նրա ոտներին։

***

Դպրոցի պահակը վաղուց արդեն մի կողմ էր հրել քարը և բաց արել դուռը։

Երրորդ դասարանի աշակերտ Հաղին սովորականի պես դպրոց է հաճախում։ Նա մի վտիտ և գունատ տղա է։ Երկու ամիս առաջ մահացավ նրա մեծ եղբայրը՝ Նասերը։ Նրանք մի անգամ որոշեցին ոտքով ամառանոց գնալ, որպեսզի Նասերը առողջանար ու կարողանային միասին դպրոց հաճախել, բայց ամառանոցում Նասերը մրսեց և մեկ շաբաթ հետո մահացավ։

Հաղին դպրոցից վերադառնալով արագ բարձրանում է կտուրը։ Կտուրը դատարկ է։ Նա այնտեղ նստում է ժամերով և տխուր նայում դեպի լեռները։ Աշուն է. անտառախմբերը գրեթե չեն երևում, իսկ խոնավ լեռները մուգ գույն են ստացել։ Նա նայում է դեպի ամառանոցը և միևնույն միտքը հանելուկի պես շարունակ դառնում է նրա գլխում.

«Այդ ինչո՞ւ ուրիշները առողջանում են ամառանոցում, իսկ Նասերը չկարողացավ առողջանալ»։

Մթնում է։ Նա իջնում է խավար խրճիթը, վառում նավթի փոքրիկ ճրագը։

# ԵՐԿՈՒ ՊԱՏՄՎԱԾՔ

## 1. ԸՆԾԱՅՎԱԾ ԽԱՂԱԼԻՔՆԵՐ

ՄԱՈ ԴՈՒՆ

(Չինական գրող)

Ջժան Գուան-խուան պարուհի է արտիստների բրիգադում, որն սպասարկում է Կորեայում մարտնչող չին կամավորներին. բրիգադը ելույթներ է ունենում նաև Կորեական մարտիկների, վիրավորների և բնակիչների համար։ Հանդիսատեսները միշտ նրան ջերմորեն են ընդունում, իսկ նրա վարպետությունն ու ընդունակությունները արդեն մեծ համբավ ունեն։

Բրիգադի իր երկու ընկերուհիների հետ Ջժանը ապրում է Կիմ ազգանունով մի կորեուհու մոտ։ Կիմի որդին գնացել է Կորեական ժողովրդական բանակ, բանակումն է նաև նրա որդու կինը, որը սանիտարուհի է։ Տանը տատիկի հետ մնացել են միայն երեք թոռնիկը՝ հինգից—ինը տարեկան։ Կիմ տատիկն առաջներում ապրում էր Փխենյանի մոտերքը, սակայն ամերիկյան ինքնաթիռները ռմբակոծեցին նրա հին տունը և հիմա նա ժամանակավորապես ապրում է Փխենյանից տասը կիլոմետր հեռավորության վրա գտնվող գետնատանը։

Ջժանն ու նրա երկու ընկերուհին մտերմացել էին Կիմի և նրա թոռների հետ, ինչպես հարազատների հետ։ Աշխատանքից ազատ ժամանակ նրանք օգնում էին տատիկին փայտ ջարդելու, ջուր կրելու, երեխաներին նայելու։ Կիմի յոթ տարեկան թոռնիկը հասկացող աղջիկ էր և պարուհի Ջժանին շատ էր սիրում։ Արտիստներն իրենց ելույթների ժամանակ նրան վերցնում էին հետները։ Աղջիկը նրանցից շատ շուտ սովորեց չինական պարերը։ Բոլորը նրան շատ ընդունակ աղջիկ էին համարում և հայտնի պարուհի Ցոյ Խեն Խիի ապագան էին կանխագուշակում։

Ամերիկյան ինքնաթիռները առաջվա պես ամեն օր թռչում էին Փխենյանի և նրա շրջակայքի վրայով, ռումբեր էին նետում, գնդակոծում գնդացիրներից։

Մարտի վերջին և ապրիլի սկզբին եղանակն սկսեց տաքանալ։ Հարթավայրում ձյունն արդեն հալչում էր։ Եվ ահա մի անգամ, երբ Ջժանն իր ընկերուհիներով վերադառնում էր կամավորների համար տրված ներկայացումից, ամերիկյան ինքնաթիռները օդային հարձակում գործեցին։ Ռմբակոծության պահին աղջիկները կարողացան թաքնվել, բայց տեսան, թե ինչպես ինքնաթիռից ինչ-որ առարկաներ գցեցին։ Ջժանի ընկերուհին, տասնյոթամյա երգչուհի Խուանը առաջինը վազեց դեպի ինքնաթիռից գցած առարկաները։ Հալվող ձյան վրա թափված էին շորեր, գուտապերչից շինված խաղալիքներ։ Խուանը խաղալիքները տեսնելով հիշեց Կիմ տատիկի թոռներին և հարցրեց. «Սրանք չտանե՞նք երեխաներին»։

Ջժանը մտածեց, որ ամերիկյան ինքնաթիռները լավ նպատակով այդ խաղալիքները գցած չեն լինի և Խուանի ասածին չհամաձայնեց։

— Ձեռք չենք տա դրանց... Զեկուցենք, թող գան քննեն ու որոշեն։

Երրորդ ընկերուհին՝ Ջժաոն պաշտպանեց Խուանին։

— Ամերիկյան ինքնաթիռները միկրոբներ են շաղ տալիս, բայց միկրոբները միջատներում են լինում. իսկ խաղալիքները խաղալիքներ են մնում։ Իմ կարծիքով այստեղ ոչ մի վտանգավոր բան չկա։

Այդ ժամանակ Ջժանն իր ընկերուհիների հետ համաձայնեց։ Նրանք վերցրին գուտապերչից շինած մի երկար օձ և երկու-երեք ուրիշ խաղալիք։

Ո՛վ իմանար, որ խաղալիքների մեջ անգամ մահաբեր միկրոբներ կային։ Մի քանի օր անց Կիմ տատիկի թոռները հիվանդացան և պարզվեց, որ նրանք հիվանդ են խոլերայով։ Երբ բուժաշխատողները տուն եկան, երեխաներն արդեն մեռել էին։ Ամբողջ տանը կենդանի մնաց միայն Կիմ տատիկը։

## 2. ԱՆՀԱՅՏ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ

Մարտ ամսին Մուկդենի բժշկական ինստիտուտին կից հիվանդանոց ընդունվեցին մի քանի հիվանդ տղաներ՝ 12—13 տարեկան։ Տղաներն ապրում էին քաղաքամերձ վայրերում։ Նրանք ունեին սիրտ խառնուք և բարձր տաքություն, ապա կորցրին գիտակցությունը և մի քանի օր անց բոլորն էլ մահացան։ Դիահերձումը ցույց տվեց ուղեղի բորբոքում։ Հիվանդանոցի դիրեկտոր Վան Բինը երբեք այդ վայրերում նման հիվանդության չէր հանդիպել, ուստի այն կասկածելի թվաց իրեն։ Նա բժիշկ Ջժոուին ուղարկեց մեռած տղաների տները հետազոտելու։ Բժիշկ Ջժոուն առաջինը այցելեց այդ հիվանդությունից մեռած Լու ազգանունով տղայի ընտանիքը, հարցուփորձ արեց տղայի ծնողներին, սակայն կասկածելու առիթ տվող ոչ մի բան չգտավ։ Տղայի ծնողների հետ զրուցելուց հետո բժշկի ուշադրությունը գրավեց պատից կախված մի տարօրինակ իր։ Դա մի փոքրիկ պարաշյուտ էր։ Պարաշյուտիկին ամրացված էր ձվաձև մի լուսամփոփ։

— Այս որտեղի՞ց է ընկել ձեզ մոտ։

— Այս պարաշյուտիկը գտել ենք մենք,— պատասխանեց մեռած Լուի ավագ եղբայրը։

— Որտեղի՞ց եք գտել։

— Կախված էր ծառից։ Իմ եղբայրը այդ լուսամփոփով պարաշյուտը տեսավ, բարձրացավ ծառը և իջեցրեց այն։ Հենց որ եղբայրս ձեռք տվեց սրան, լուսամփոփն ինքն իրեն բացվեց։ Եղբայրս շատ զարմացավ։

Բժիշկ Ջժոուն, լուսամփոփը զննելուց հետո, հարցրեց, թե որևէ բան չկա՞ր լուսամփոփի մեջ, բացվելու ժամանակ։

— Հա՜, ես մոռացա ձեզ ասել,— պատասխանեց տղայի մեծ եղբայրը,— երբ լուսամփոփը բացվեց, նրա միջից գունավոր թաթիկներով մոծակների մի երամ դուրս թռավ։

— Մոծակներն արդյոք կծե՞լ են ձեզ ու ձեր եղբորը։

— Չեմ հիշում, գուցե և կծել են։

Բժիշկ Ջժոուն ամեն բան հասկացավ. այդ լուսամփոփի մեջ բակտերիաներով վարակված մոծակներ են եղել, որոնցից և առաջացել է տղաների մահացությունը։

Թարգմ. Ա. ՂԱԶԱՐՅԱՆ

# ԱՌԱՏՈՒԹՅԱ՛Ն ՀՈՎԻՏԸ

*Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Մենք շատ վայրերում ենք եղել ձեզ հետ, սիրելի երեխանե՛ր. այժմ էլ եկեք այցելենք մեր Հայրենիքի չնաշխարհիկ անկյուններից մեկը՝ նշանավոր Ֆերգանայի հովիտը:

Ահա մենք գնացքով դուրս ենք գալիս Տաշքենդից և ուղևորվում դեպի Ֆերգանա: Մեր գնացքը կանցնի Տաջիկստանի տերիտորիայով, կսլանա Մոգոլ-Թաու լեռների մոտով, լեռնային նեղ կիրճով, որտեղից հոսում է Սիր-Դարյա գետը և նորից կմտնի Ուզբեկստան:

Եվ երբ մենք կանցնենք այս բնական դարբասները, մեր առաջ կբացվի սքանչելի մի տեսարան: Երկու կողմից կձգվեն մանիշակագույն նախալեռները: Նրանց վրա, ասես օդում կախված, թափանցիկ մշուշի միջից կգծագրվի երկրորդ լեռնաշարքը: Ավելի վեր՝ երկնքի կապույտի վրա կերևա երրորդը՝ մանյակի նրման իրար կողքի շարված ձյունածածկ գագաթներով: Դրանք Պամիրի լեռներն են:

Իսկ դեմուդեմ՝ ամբողջովին կանաչի մեջ ընկղմված, կտարածվի հովիտներից ամենագեղեցիկը՝ Ֆերգանայի հովիտը: «Միջին Ասիայի մարգարիտը», այսպես էին կոչում հին ճանապարհորդները Ուզբեկստանի այս բարեբեր հողը: Այժմ այն «Սպիտակ ոսկու հովիտ» անունն է ստացել: Եվ դա պատահական չէ: Ֆերգանայի հովիտը Ուզբեկստանի բամբակի հիմնական աղբյուրն է:



Հովտի հյուսիսային երկարությամբ անցնում է Սիր-Դարյա գետը: Հարավից, Ալայան լեռնաշղթայից դեպի Սիր-Դարյա են սլանում նրա արագընթաց վտակները՝ Սոխը, Շահիմայդան, Իսֆայրամը, բայց վաղուց ի վեր նրանք Սիր-Դարյա չեն թափվում: Հենց այդ գետակների շնորհիվ էլ հովտի հարավում ձգվում է օազիսների շարքը:

Աշխատասեր ուզբեկ գյուղացին դարեր շարունակ այս օազիսներում աճեցրել է Ֆերգանայի ծիրանը, նուշն ու նուռը, սպիտակ բամբակը, բայց միշտ էլ մնացել ձեռնունայն, մի կտոր հացի կարոտ: Նրան հավասար չափով հարստահարում էին ուզբեկ հարուստները և ցարական չինովնիկները: Ֆերգանայի «դրախտում» ուզբեկ աշխատավորը հազիվ քարշ էր տալիս իր գոյությունը: Իզուր չէր, որ հնում ուզբեկների մոտ շատ տարածված էր այս առածը. «Երբե ես ձավար և աղ ունենայի, անպայման չիլա կեփեի, բայց ափսո՜ս, որ յուղ չկա»:

Այժմ ծաղկուն Ֆերգանայում ուզբեկ աշխատավորը ապրում է ազատ ու երջանիկ և մեր երկրի մյուս ժողովուրդների հետ կառուցում է մարդկության ապագան՝ կոմունիզմը:

Նախկինում ուզբեկ գյուղացիները օգտագործում էին միայն լեռներից իջնող փոքրիկ գետերի և գետակների ջրերը: Ֆերգանայի հովտում հսկայական հողեր, ջուր չլինելու պատճառով, անմշակ էին մնում: Մինչդեռ այդ հողերի կողքով Սիր-Դարյան իր հորդառատ ջրերը քշում տանում էր Արալյան ծովը:

Ռևոլյուցիայից հետո ֆերգանցիները նախ կարգի բերեցին իրենց հին ջրանցքնե-

րը, իսկ նետագայում ձեռնամուխ եղան նոր, ավելի մեծ ջրանցքների կառուցմանը: Ջրանցքների կառուցումը Ֆերգանայում ամեն անգամ համաժողովրդական տոնի էր վերածվում: Ամեն մարդ աշխատում էր մասնակցել շինարարությանը: Ցանկացողների թիվը միշտ ավելի շատ էր լինում, քան հնարավոր էր տեղավորել շինարարության վրա: Լյագանի 32 կիլոմետրանոց ջրանցքը կառուցվեց 17 օրում: Մեկ ու կես ամիս տևեց Ֆերգանայի ընկեր Ստալինի անվան մեծ ջրանցքի շինարարությունը, որի երկարությունը 270 կիլոմետր է: Հարյուր վաթսուն հազար մարդ մասնակցեց այդ ժողովրդական հսկա կառուցմանը: Նման բան չէր եղել աշխարհի ոչ մի մասում: Ամերիկայի Կալիֆորնիա նահանգի ջրանցքը, որը Ֆերգանայի ջրանցքի կեսի չափ չկա, 30 անգամ ավելի դանդաղ կառուցվեց: Ցարական կառավարությունը Ֆերգանայից ոչ հեռու, Քաղցած Տափաստանում փորձեց ջրանցք անցկացնել, այն էլ տասնմեկ տարում հազիվ կարողացավ երեսուն կիլոմետրանոց մի առու փորել: Իսկ Ֆերգանայի ընկեր Ստալինի անվան մեծ ջրանցքը մի հսկայական կառուցվածք է, որը մի տարի հետո 60 կիլոմետր ևս երկարացվեց: Նրա շնորհիվ 70 հազար հեկտար նոր հողեր յուրացվեցին, 500 հազար հեկտար հողի ոռոգումը էլ ավելի բարելավվեց:

Անցնենք այդ ջրանցքի երկարությամբ՝ արևելքից-արևմուտք: Մենք մեր ճանապարհին կտեսնենք հազարից ավելի հիդրոտեխնիկական կառուցվածքներ: Ուսումնվեց կամուրջ է անցնում ջրանցքի վրայով, որոնցից վեցը երկաթուղային կամուրջներ են:

Ստալինի անվան ջրանցքից հետո կառուցվեցին Հարավ-ֆերգանյան և այլ ջրանցքներ, որոնք կապույտ ժապավենների նման խաչաձևում են այժմ Ֆերգանայի հովիտը: Այդ ջրանցքները հիմնովին փոխել են հովտի բնույթը: Նախկին խղճուկ, կարկատանների նմանվող հողակտորների փոխարեն, այժմ տարածվում են բամբակի անծայր պլանտացիաները, այգիներն ու մարգագետինները:

Տասնյակ հազարավոր տոննա «Սպիտակ ոսկի»՝ բարձրորակ երկարաթել բամբակ է տալիս Ֆերգանայի հովիտը: Մեր հայրենիքի մետաքսի հումքի մի զգալի մասը նույնպես Ֆերգանան է տալիս:

Առաջավոր գյուղատնտեսության կողքին Ֆերգանայում զարգացել է նաև արդյունաբերությունը, հիմնովին փոխվել է քաղաքների տեսքը: Ֆերգանան, Կոկանդը, Անդիժանը, Նամանգանը, Մարգելանը նախկին գյուղատիպ, հետամնաց քաղաքներից վե-




րածվել են առաջավոր սոցիալիստական քաղաքների: Նրանց ասֆալտապատ փողոցներով սլանում են մարդատար ավտոմեքենաներն ու ավտոբուսները: Այդ քաղաքները դարձել են կուլտուրական կենտրոններ:

Անճանաչելի են դարձել Ֆերգանայի գյուղերը: Լուսավոր ու գեղեցիկ նորակառույց տներով, էլեկտրական լույսերով ողողված այդ գյուղերը նման են փոքրիկ քաղաքների: Գրեթե ամբողջովին վերացել է ձեռքի աշխատանքը գյուղատնտեսության մեջ: Նույնիսկ բամբակի բերքահավաքը, որ միշտ ձեռքով է կատարվել, մեխանիզացիայի է ենթարկվել: Ֆերգանայի դաշտերում հազարավոր բամբակահավաք մեքենաներ են այժմ աշխատում:

Բերքահավաքի ժամանակ իրենց ծնողներին օգնում են նաև Ֆերգանայի պիոներները: Յուրաքանչյուր պիոներ դպրոցի բակում ունի իր փոքրիկ հողակտորը, որտեղ նա աճեցնում է մի քանի տասնյակ բամբակի թուփ: Չէ՞ որ յուրաքանչյուր երեք կիլոգրամ բամբակի հումքից 12 մետր չիթ է ստացվում, կամ 20 մետր բատիստ, 55 բաշկինակ կամ 40 համարի 120 կոճ:

Ֆերգանայի պիոներները իրենց աշխատանքով մեր հայրենիքին հազարավոր կիլոգրամ մաքուր բամբակ են տալիս:

Հարուստ է Ֆերգանայի հովիտը, Ուզբեկստանի փառքը:

# ԿՈՐԵԱՆ



Ջախջախելով ճապոնական իմպերիալիստներին, սովետական զորքերը 1945 թվականին ազատագրեցին նաև կորեական ժողովրդին: Տասնյակ տարիներ ինքնուրույնությունից զրկված, հարստահարված կորեական ժողովուրդը ազատ շունչ քաշեց: Սակայն մեր զորքերը ազատագրեցին Կորեայի միայն հյուսիսային մասը, իսկ հարավում ափ իջան ամերիկացիները: Նրանք այնտեղ ոչինչ չփոխեցին, թողեցին նույն կալվածատիրական կարգերը: Փոխվեցին միայն տերերը, իսկ աշխատավոր ժողովուրդը մնաց նույն ծանր վիճակում:

Այդ դեռ բավական չէր: Ամերիկացիները աչք էին դրել Հյուսիսային Կորեայի վրա, ուր արդեն ժողովրդական Ռեսպուբլիկա էր ստեղծվել:

1950 թվականի հունիսին ամերիկյան գազազած զորքերը հարձակվեցին Կորեական ժողովրդական ռեսպուբլիկայի վրա: Եվ արդեն երկու տարի է, ինչ կորեական ժողովուրդը հերոսական պայքար է մղում ամերիկյան հրոսակների դեմ, որոնք ռմբակոծում են կորեական խաղաղ գյուղերն ու քաղաքները, ավերում են դպրոցներն ու ման-





## ՄԱՐՏՆՉՈՒՄ Է

*Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ*



կապարտեզները, այրում են դաշտերի հասած բերքը: Նրանք չեն խնայում ո՛չ ծերերին և ո՛չ էլ երեխաներին: Չկարողանալով ընկճել կորեական ժողովրդի ազատաշունչ



ոգին, ամերիկյան ավազակները զանազան վարակիչ հիվանդությունների բակտերիաներ են գցում ժողովրդի վրա, սպառնում են ատոմային զենքով:

Իրենց ծնողների հետ կողք-կողքի պայքարում են նաև կորեական երեխաները՝ նորաստեղծ պիոներական կազմակերպության անդամները, որոնք օգնում են իրենց ծնողներին, այրում և պայթեցնում են ամերիկյան շտաբները և պահեստները:

Կորեացիները մենակ չեն: Նրանց հետ մեկտեղ անգլո-ամերիկյան հրձիգների դեմ պայքարում են նաև չինական կամավորները:

Կորեացիների մղած պատերազմը արդար է: Նրանք պաշտպանում են իրենց նոր կյանքը, հայրենիքն ու ազատությունը: Այդ է պատճառը, որ աշխարհի խաղաղասեր ժողովուրդները միահամուռ բողոքում են ամերիկյան գիշատիչ իմպերիալիստների դեմ. պահանջում են վերջ տալ Կորեայի արյունահեղ պատերազմին, աշխարհում հաստատել խաղաղություն: Կասկածից դուրս է, որ



Կորեայի ժողովուրդը արյունարբու բշնամու դեմ հաղթող դուրս կգա:





# ՊԱՏՄՎԱԾՔ ԹՌԻՉՔԻ ՄԱՍԻՆ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Բ. ՄԱՋՄԱՆՅԱՆԻ

Պիոներ-պալատում իրար հանդիպել,
Անծանոթ էին, դարձել են ընկեր.
Տարբեր դպրոցից, տարբեր փողոցից,
Տարբեր և լեզվով, բայց հասակակից:
Եվ այնպես լավ են հասկանում իրար,
Քիչ է ասելը՝ հարազատ եղբայր.
Եվ զարմանում են, ի՞նչպես է եղել,
Որ մինչ այդ իրար չէին հանդիպել...



Նրանք հինգ ընկեր, հինգն էլ պալատում
Սովորում էին աերո-խմբակում:
Հինգն էլ գիտեին պատրաստել ընտիր
Արագաթռիչ մոդել-ինքնաթիռ:
Մեկը թևերն էր պատրաստում ամուր,
Թևեր՝ համաչափ, գեղեցիկ, ամուր,
Մյուսն էլ, ասենք, պոչուկ կամ անիվ.
Հեշտ չէ պատրաստել մոդել-ինքնաթիռ:

Նրանց ձեռքի տակ փայտիկը կարծես
Կենդանանում էր հզոր արծվի պես:
Տոն էր այն օրը: Այնտեղ, Մոսկվայում
Ինքնաթիռների երամն էր ճախրում,
Նայում էր ինքը՝ առաջնորդը մեծ,
Ողջունում խիզախ բազեներին մեր...
Չորս կողմ ծփում են այնպես հաղթական
Մեծ Հոկտեմբերի դրոշներն ալվան...
Տոն էր այն օրը ողջ Հայրենիքում.
Հինգ ընկերներն էլ կանգնում են շարքում...
Ինքնաթիռն իրենց պահած գլխից վեր
Տանում են նրանք մեծ տոնին նվեր.
Պիոներական շարքերի վրա
Իջել է կարծես ճերմակ մի երամ.
Ինքնաթիռների երամն այդ սպիտակ
Շարժվում է դեպի լայն հրապարակ:
Առաջ են գալիս ընկերները հինգ
Եվ ինքնաթիռը բաց թողնում երկինք:
Նրա հետ մեկտեղ օդ են բարձրանում
Նոր ինքնաթիռներ՝ թեթև ու սահուն...
Ո՞ւմ ինքնաթիռն է այն երամի մեջ
Հրապարակով պտտվում անվերջ...
Ճախրում է բարձր և թռչում հեռու:
Ու հինգ ընկերն էլ կանգնած շարքերում
Նայում են իրար խնդուն, ժպտերես՝
Իրականացավ երազանքն իրենց:
Եվ ողջունում են բոլորը իրար
Նոր ինքնաթիռի թռիչքի համար.
Կարծես ոչ թե հինգ, այլ հազար հոգով
Կառուցել են այդ ինքնաթիռը նոր:
Դե, պարզ է, թեկուզ մոդել է փոքրիկ,
Բայց քեզ համար է, անգի՛ն Հայրենիք...

# ՊԱՀԱԿԸ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՍԵԴՐԱԿՅԱՆԻ

*Մի ժամանակ ես հաճախ էի գնում Որսորդական վարչություն։*

*Մի անգամ էլ այդ հիմնարկի բակը մտնելիս, ակամայից ուշադրությունս գրավեց 3—4 տարեկան մի երեխա, որ հեծանիվ էր քշում փողոցի եզրին։ Դեռ անվարժ էր. հեծանիվը երբեմն ծռվում էր և իր հեծյալին տանում դեպի փողոցի կենտրոնը...*

*«Հիմա ավտոյի տակ կընկնի» ահով մտածեցի ես և հենց ուզում էի քայլել դեպի երեխան, երբ փողոցի մյուս կողմի տան բակից դուրս թռավ մի ահագին գորշ շուն,*

նայեց դես-դեն և երեխային նկատելով, վազեց ու իր մարմնով փակեց նրա հեծանվի առաջը:

— Ճանապարհ տուր,— բարկացած գոչեց տղան:

Շունը տեղից չշարժվեց: Նա կանգնել էր սալահատակի կողմը և տղային իր մարմնով պաշտպանում էր երթևեկող ավտոմեքենաներից, իսկ հայացքով կարծես ասում էր՝ «փողոցում խաղալ չի կարելի, գնանք բակը»:

Երբ շունը տեսավ, որ համառ տղան մտադիր չէ հեռանալ փողոցից, ատամներով բռնեց նրա թևից և հեծանվի հետ միասին քաշեց դեպի դիմացի բակը: Տղան դիմադրում էր շանը և անհույս գոչում.

— Բա՛ց թող... բա՛ց թող...

Իսկ շունը քաշում էր նրա թևից և պոչով հարվածում՝ քշում, որ հետևի իրեն: Ավտոմեքենա անցնելիս նա կանգ էր առնում. ապա նայում՝ հո էլ մեքենա չի՞ գալիս: Երբ տեսավ, որ մեքենաները հեռու են, տղային հապճեպ անցկացրեց փողոցը և մտավ կողքի շենքի բակը:

Հաջորդ օրը, երբ ես նորից գնում էի Որսորդական վարչություն, դարձյալ հանդիպեցի այն տղային և իր շանը:

Տղան խաղում էր շենքի արտաքին բակում՝ մայթից ոչ հեռու, իսկ շունը մայթի եզրին պպզած և ականջները սրած՝ զգոն պահակություն էր անում. չլինի՞ թե չարաճճի տղան իր խաղով տարված հանկարծ հասնի փողոց:

Ես մոտեցա տղային, որ հարց ու փորձ անեմ այդ խելացի շան մասին: Կենդանուն դուր չեկավ իմ վարմունքը: Նա վեր թռավ տեղից, ցատկեց-նստեց իմ և տղայի միջև ու սպառնագին մռռացրեց: Հեռացա: Քիչ անց, երբ դուրս էի եկել Որսորդական վարչությունից, նկատեցի մի կնոջ, որը պայուսակը ձեռքին կանգնած ինչ-որ պատվերներ էր տալիս իմ ծանոթ շանը: Պատվիրեց, գլուխը շոյեց, մի կտոր շաքար գցեց նրա բերանն ու գնաց, երևի շուկա էր գնում:

Մայթով անցնելիս հարցրի տղային:

— Ի՞նչ էր պատվիրում մայրդ ձեր շանը:

— Ասում էր՝ լավ կպահես մեր Սուրիկին.— ճերմակ, մանրիկ ատամները ցույց տալով պատասխանեց երեխան և շարունակեց իր անվարժ ճանապարհորդությունը եռանիվ հեծանիվով: Իսկ շունը լարված հայացքով ու զգաստ հետևում էր նրա շարժումներին և մեկ-մեկ էլ կասկածանքով ինձ էր նայում: Երբ տղան անցնում էր իմ մոտով, ասացի.

— Սուրի՛կ ջան, մի րոպե կանգնիր, բան եմ հարցնելու:

Կանգնեցրեց հեծանիվը թե չէ, շունը տնկվեց իմ առաջ: Նայում է ինձ սպառնագին: Նրան չգրգռելու համար մի քայլ ետ գնացի և շատ մեղմ տոնով հարցրի տղային.

— Երեկ, որ ատամներով բռնել էր թևիցդ, չցավեցրե՞ց քեզ...

— Ո՛չ... Շատ սուր ատամներ ունի, բայց այնպես է բռնում, որ չցավի,— պատասխանեց տղան և ոտքերը գործի դնելով սլացավ բակի երկայնքով:



Իսկ շունը մայթի եզրին նստած, աչալուրջ հետևում էր իր փոքրիկ տիրոջը. չլինի՞ թե խաղով տարված հասնի փողոց և ընկնի մեքենայի տակ. չլինի՞ թե մեկն ու մեկը չար դիտավորությամբ մոտենա նրան...

# ՔԱՑԱԽՆ ՈՒ ՁԻՆԻՆ

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

*Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ*

Ձինին ասաց.— Քացա՛խ, գիտե՞ս,
Մարդիկ իմ մեջ պահել են քեզ,
Որ դու պետք գաս մի լավ բանի,
Դեղի համար կամ սեղանի,
Բայց դու, ավաղ, այնքա՜ն թունդ ես,
Որ մեզ պիտի փորձանք բերես:
— Ձայնդ կտրի՛ր, հիմա՛ր Ձինի,
Իմ գործը շատ լավ գիտեմ ես...
Պատասխանեց Քացախն այսպես:



Ու սկսեց էլ առավել
Թրվել, եռալ, իրեն զոռել.

Վերջն էլ, պարզ է ինչ կլինի,
Ուժ տվեց ու փշրեց Ձինին,
Թափվեց հողին ու դարձավ ցեխ:
Շատ տեղին է հիշել այստեղ
Խոսքն իմաստուն մեր հայրերի.
«Քացախն ինչքան որ թունդ լինի,
Իրեն պիտի վնաս բերի»:

***

Ես այս առակն եմ միշտ մտաբերում,
Երբ ագրեսորներն ամերիկյան,
Եռում են անվերջ, անվերջ մոլեգնում.
Ու պիտի պայթեն մի օր անպայման:

# ՄԵԾ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

*Ռ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ*

*(Ճարտարապետ, Ստալինյան մրցանակի լաուրեատ)*

Այս ամառ ես գնացել էի Լենինգրադ. Վերադարձին ուզեցի մի երկու օր մնալ մեր հայրենիքի սքանչելի մայրաքաղաքում: Հատկապես ցանկություն ունեի տեսնել նորակառույցները: Օրը տոթ էր և օդը գոլորշիով հագեցված, ուր որ է անձրև պետք է գար: Չնայած վատ եղանակին, ես մեկնեցի դեպի Լենինյան բարձունքները: Այնտեղ էր գտնվում Մոսկվայի համալսարանի նորակառույց շենքը:

Արդեն գնացքի միջից երևում էր հեքիաթներում նկարագրված ոսկյա պալատի նման շողշողացող բազմահարկը: Նա բարձունքից իշխում էր ամբողջ Մոսկվայի վրա:

Ահա տրոլեյբուսի վերջին կանգառը: Մենք իջնում ենք: Առաջին անձրևի խոշոր կաթիլները ողեկցում են մեզ: Հարկավոր է արագացնել քայլերը: Անձրևն ուժեղանում է: Համալսարանին չհասած պահվում ենք մոտակա պահակատանը և բաց դռնից դիտում ենք այդ հոյակապ կառուցվածքը: Լեռան պես վեր սլացած համալսարանի շենքն այնքան բարձր է, որ ամպերը գալիս ծածկում են նրա վերին հարկերը:

Անձրևը դադարեց. պատռվեց, ծվեն-ծվեն եղավ թանձր ամպերի քողը: Եվ մեր առաջ կանգնեց արևի շողերով ողողված համալսարանի հիասքանչ շենքը:

Անմոռանալի են իմ ապրումներն այդ րոպեներին:

Մոսկվայի համալսարանը մինչև այս շենքի ավարտվելը տեղավորված է լինելու 160 տարվա հնություն ունեցող մի շենքում: Համալսարանը հիմնադրվել է 1755 թվակա-

նին ռուս մեծ գիտնական Լոմոնոսովի ջանքերով: Նա տվել է մի շարք մեծ գիտնականներ՝ հանճարեղ ֆիզիոլոգ Սեչենովին, մաթեմատիկոս Չեբիշևին, ռուսական ավիացիայի հայր Ժուկովսկուն... Այս համալսարանի սաներն են եղել՝ Գերցենն ու Բելինսկին, մեծ գրողներ՝ Գրիբոյեդովը, Գոնչարովը, Տուրգենևը, Օստրովսկին, Չեխովը: Բայց միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո էր, որ համալսարան մտան հազարավոր աշխատավոր մարդիկ: Մոտ 30000 հոգի սովորել ու ավարտել են այդ հռչակավոր համալսարանը երեսուներեք տարվա ընթացքում:

Այժմ Մոսկվայի համալսարանում սովորում են 11.000 ուսանող: Գիտության այդ հսկան զբաղեցնում է մի շարք շենքեր: Դրա համար էլ հարկ եղավ կառուցել մի նոր բազմահարկ: Այդ շենքի կառուցումն սկսվեց ընկեր Ստալինի նախաձեռնությամբ և ցուցմունքով:



Արտակարգ է իր չափերով գիտության այդ պալատը:

Մոսկվայի համալսարանի նախագիծը կազմել են ճարտարապետության ակադեմիկոս Լ. Ռուդնևը, Ս. Չեռնիշևը, Պ. Աբրոսիմովը, Ա. Խրյակովը: Այդ շենքն ունի ավելի քան երկու և կես միլիոն խորանարդ մետր ծավալ: Նրա մեջ կտեղավորվի մոտ 250 դպրոցական շենք կամ տասը հազարից ավելի մարդ: Միայն հանրակացարանում կբնակվեն 6000 հոգի:

Համալսարանում եղած մարդկանցով կարելի է բնակեցնել մի ամբողջ քաղաք: Չնայած դրան այս շենքում ներքին կյանքը կազմակերպվում է մեծ հնարամտությամբ: Այստեղ ամեն ինչ մտածված է, ամեն ոք գիտե իր անելիքը, իր տեղը: Այդ շենքը, Մոսկվայի բարձրաբերձներից ամենամեծը, բաղկացած է մի շարք մեծ և ընդարձակ մասերից, որոնք միացած են շենքի կենտրոնի հետ: Կենտրոնական մասն ունի քսանվեց հարկ, իսկ այդ հարկերից վեր կանգնած է այդ շենքը պսակող 55 մետրանոց աշտարակը, որի սրածայր գագաթին շողշողում է հսկայական մի աստղ:

Այսպիսով, ամբողջ շենքի բարձրությունը, աստղի հետ միասին, կազմում է մոտ 250 մետր: Եթե Երևանի Ստալինի պողոտայում

կառուցված վեցհարկանի շենքերից մեկի վրա տասը նույնպիսի շենք դնենք, հազիվ Մոսկվայի համալսարանի բարձրությանը հասնի։

Համալսարանի շենքի կենտրոնական մասում տեղավորված են երեք ֆակուլտետ իրենց լսարաններով, գրադարաններով և ընթերցարաններով։ Այստեղ են և թանգարանները, ընդհանուր դահլիճը 1500 հոգու համար, ակումբը իր դահլիճով 800 հոգու համար, լողարան-ավազանը, մարմնամարզական դահլիճները։ Թևերում դասավորված



Համալսարանի շենքի 18-րդ հարկում դրվելու է հսկայական ժամացույց, որի մեծ սլաքի երկարությունը 8 մետր 74 սանտիմետր է, իսկ փոքրինը՝ 4 մետր 12 սանտիմետր։

ՆԿԱՐՈՒՄ՝ Վարպետները հավաքում են այդ ժամացույցի սլաքները։

(Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ)

են այլ բաժիններ, լաբորատորիաներ, լսարաններ։ Սրանք բոլորը հագեցված են նորագույն տեխնիկայով։

Կենտրոնական մասին անմիջապես կից են հանրակացարանները, որոնք լավ կահավորված հյուրանոց են հիշեցնում։

Շենքի թևերում տեղավորված են 6000 սենյակ։ Ամեն մի ուսանողի հատկացված է մի սենյակ բոլոր հարմարություններով։ Բացի առանձին սենյակներից, ուսանողների համար ամեն մի հարկում կառուցված են հյուրասենյակներ, ժամանցի և այլ սենյակներ։ Բոլոր ասպիրանտները այստեղ ընդարձակ սենյակներ ունեն, իսկ պրոֆեսորները լավ կահավորված բնակարաններ։

Արված է ամեն բան, որ ուսանողը կարողանա սովորել, խորանալ իր ուսման մեջ։ Շենքի դահլիճները զարդարված են որմնանկարներով։ Ճեմասրահներում ու հանգըստի սենյակներում, մարմարով և թանկագին փայտով ու մետաղով ձևավորված պատերին, փակցված են քանդակներ ու զարդանկարներ։ Գլխավոր դահլիճի նախապատին տեղավորված են գիտության տիտաններ՝ Մարքսի, Էնգելսի, Լենինի և Ստալինի նկարները։ Դահլիճներից երկուսում, որոնց կառուցումն արդեն ավարտված է, ցուցադրված են աշխարհի բոլոր ժամանակների մեծ գիտնականների դիմանկարները, որոնք իրենց ողջ կյանքը նվիրել են գիտությանը։

Շենքի բոլոր մասերն ունեն հարյուր տասնմեկ լիֆտ, որոնք կապում են առաջին հարկը մյուս բոլոր հարկերի հետ։ Նրանք դասավորված են խումբ-խումբ. բայց այս լիֆտերը սովորական չեն։ Նրանք ճեպընթաց են։ Մեր ցանկացած հարկի թիվը հայտնելը, կոճակի սեղմելը, նրա շարժվելը և կանգ առնելը տևում են մի քանի վայրկյան։ Բուն կառուցվածքից բացի համալսարանն ունի նաև ուրիշ շենքեր, բուսաբանական ջերմոցներ, աստղադիտարան, բուսաբանական այգի, որտեղ ներկայացվելու են աշխարհի բոլոր բույսերը, համապատասխան միջավայրում։

Համալսարանի առաջ փռված է մի կանաչազարդ լայն տարածություն, որ հասնում է մինչև Մոսկվա գետի ափը։ Համալսարանի գլխավոր մուտքն այս կողմից է։ Այդ կանաչ տարածության կենտրոնական մասում կառուցված են ավազաններ ու շատրվաններ, որոնք մի առանձին հմայք են տալիս շրջապատին։ Համալսարանի շենքը զարդարված է քանդակներով։ Դրանք թեև շատ մեծ չափեր ունեն, բայց ներդաշնակ տեղավորված են շենքի տարբեր մասերում։

Բարձր դիրքով տեղավորված են մի քանի հսկա ժամացույցներ։ Գլխավոր մուտքի վերևում դրված է Սովետական Միության մեծ գերբը՝ զարդարված հաղթական դրոշակներով. իսկ գլխավոր շենքի մուտքի առջևում բարձր պատվանդանի վրա կանգնեցված է մեծ Ստալինի քանդակը։

Ահա այսպիսին է մեր Միության մայրաքաղաքի մեծ նորակառույցներից մեկը՝ Մոսկվայի համալսարանի շենքը։

# ԵՐԿՈՒ ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅՈՒՆ

*ՓՈՒԼԱԹ ՄՈՒՄԻՆ*

1.

Խնդությամբ է ահա սիրտը քո լցվում,
Երբ նայում ես մեր Տաշքենդին ծաղկաշատ,
Ծառերի տակ զրուցում են, զբոսնում
Պիոներներ՝ դանդաղաքայլ ու հանդարտ:

Ծաղկանոցին հետաքրքիր նայեցին
Երկու աղջիկ, երկու քույրեր նոր աճած,
Առուների նման նրանց շորերին
Թուխ ծամերն են նստել քնքուշ ոլորած:

Նուրխոնը և Ռախսատը՝ քույրն ավագ
Դուստրերն են մի մանածագործ բանվորի,
Նրանք սիրով զրուցում են շարունակ
Ամռան մասին պիոներական ճամբարի:

Աղջիկների ձեռքերում կան բովչական
Ծաղկեփնջեր՝ արևաշող գույներով,
Նրանց պայծառ երազներն ու ապագան
Լի են հույսով և անսահման լույսերով:

Ցանկանում է մեկը դառնալ ինժեներ,
Մյուսը՝ բժիշկ-աշխատանքով ժրաջան.
Չէ՞ որ ընդմիշտ մեծ Իլյիչն է կտակել
Պիոներներին ճանապարհը գիտության:

2.

Սակայն դու, տե՛ս, երկիրը այն հարևան,
Որը Իրան հայտնի անունն է կրում,
Տառապում է նա հարկերից անսահման՝
Կաշկանդվելով խաբեության թակարդում:

Իրանական Մեշխեդ քաղաքը տանջված
Անուրախ է և իր կյանքը՝ մութ է, մեգ,
Աղքատ մարդիկ այնտեղ չունեն տուն ու
հաց,
Այդ քաղաքում դու չես լսի զվարթ երգ:

Փողոցներում, ուր ոնց գետի հորդ ալիք,
Մարդկանց ամբոխն է միշտ հոսում
անվախճան,
Ստվերի պես թափառում է մի աղջիկ՝
Ձեռքը պարզած, որպես խղճուկ մուրացկան:

Մեջքն է ցավում անօգնական աղջկա,
Չորացել են լեզուն, կոկորդը շրգից.
Եվ նա անցորդ մարդկանց թվում է հաճախ,
Թե խլացել, համրացել է մորմոքից:

Իսկ իր կողքին ձեռքն է մեկնած սպասում
Որբ եղբայրը՝ ողորմություն աղերսում,
Գուցե՞ մեկը լինի հարուստ ու գթա
Թեկուզ չնչին գրոշ իրեն բաժին տա:

Երեխայի փոքրիկ ծնկներն են դողում,
Շոգն է այրում, հեկեկում է տանջանքից,
Այնինչ անցորդ մարդիկ ուշք էլ չեն
դարձնում,
Միշտ անտարբեր հեռանում են նրանից:

3.

Ողջ Իրանում քաղցն ու կարիքն է տիրում,
Նորություն չի այնտեղ ո՛չ վիշտ և ո՛չ սուգ —
Վիլլաներում միայն տերերն են ապրում,
Չունեն տներ չքավորներն ընչազուրկ:

Պատրաստվելով պատերազմի անդադար
Արյունատենչ յանկիները կատաղի,
Ուղարկում են այդ երկիրը սովահար
Հրացաններ և շարասյուն տանկերի:

Բայց մղում է ժողովուրդը մեծ պայքար,
Որ նվաճի խաղաղությունն իր կյանքի,—
Ոչ, չեն կարող ստրկական անարդար
Լուծը դնել ժողովրդի ուսերին:

Բայց շողում են վառ աստղերը Կրեմլի
Եվ նրանց են հիմա նայում Մեշխեդում
Հազարավոր հասակավոր, պատանի՝
Ազատության հույսերն իրենց սրտերում:

Թարգմ. Յ. ՇՈՂԵՆՑ

# ԱԲՈՒ ԱԼԻ ԻԲՆ-ՍԻՆԱ (ԱՎԻՑԵՆՆԱ)

Հ. ՓԱՓԱԶՅԱՆ



Անցյալ տարի նոյեմբերին խաղաղության Համաշխարհային խորհուրդը որոշեց 1952 թվականին տոնել տաջիկական մեծ գիտնական, բժիշկ, բանաստեղծ և մտածող Աբու Ալի Իբն-Սինայի (Ավիցեննա) ծննդյան հազարամյակը։

Իբն-Սինայի ծննդավայրը Ուզբեկստանի Բուխարա քաղաքի մոտ գտնվող Խորմեյսան գյուղն է (այժմ Ռոմեթան)։ Նրա հայրը ծագումով Տաջիկստանի հարավից էր։ Հետո նա նշանակվեց Բուխարայի շրջաններից մեկի՝ Խորմեյսանի կառավարիչ։ Այստեղ էլ ամուսնացավ։ Խորմեյսանում ծնվեցին Աբու Ալի Իբն-Սինան և նրա եղբայրը։ Հետո նրանց ուղարկեցին Բուխարա՝ սովորելու։

Կարճ ժամանակում փոքրիկ Իբն-Սինան տիրապետում է գիտության կարևոր ճյուղերին, հիացմունք պատճառելով իր ուսուցիչ, հայտնի փիլիսոփա Աբու Աբդուլլա Նաթելիին։ Իբն-Սինան դեռ տասնվեց տարեկան էլ չկար, երբ նրա ուսուցիչն ասաց, թե նա արդեն կարող է ինքնուրույն կերպով շարունակել իր ուսումը։

Տասնութ տարեկան հասակում նա արդեն հայտնի բժիշկ էր։ Մի անգամ թագավոր Նուհ Իբն-Մանսուրը հիվանդացավ։ Պալատական բժիշկները բոլոր հնարքները գործադրեցին, բայց չկարողացան նրան բուժել։ Իբն-Սինան հրավիրվեց պալատ և բուժեց թագավորին։ Այս դեպքից հետո Իբն-Սինայի անունն ավելի հռչակվեց։

«Ես էմիրից խնդրեցի,— գրում է Իբն-Սինան,— որ նա թույլ տա ինձ իր գրադարանում գտնվող բժշկական գրքերից օգտվել։ Էմիրը կատարեց իմ ցանկությունը։

Երբ ես գնացի այնտեղ, տեսա շատ սենյակներ ունեցող մի շենք, սենյակներում գրքերով լիքը արկղներ կային։ Ես կարդացի իմ նախորդների գրքերի ցուցակը և մեկը մյուսի ետևից սկսեցի վերցնել ուզածս գրքերը։ Ես կարդում էի տարբեր գրքեր, այնպիսիները, որոնց անունը նույնիսկ ոչ ոք չէր լսել։ Դեռ երբեք չէի տեսել այդ գրքերը և դրանից հետո էլ առիթ չեմ ունեցել նորից տեսնելու։ Ես կարդացի դրանք ու հասա գիտունների մակարդակին։ Երբ իմ տասնութ տարին լրացավ արդեն սովորել և ավարտել էի բոլոր գիտությունները։ Դրանից հետո ինձ համար ոչ մի նոր բան չհայտնագործվեց։ Տարբերությունը այն էր միայն, որ այն ժամանակ, ես գիտությունը հափշտակում էի սուրալով, իսկ այժմ նրան մոտենում եմ ավելի լուրջ և այն գիտեմ ավելի հիմնավոր կերպով»։

Իբն-Սինան բնական գիտությունների մասին նոր և առաջադիմական մտքեր էր արտահայտում։ Այդ պատճառով էլ նա իր դեմ էր գինում երկրի հետադեմ խավերին, մանավանդ իր ժամանակի հոգևորականությանը։ Հոգևորականները հալածում և աշխատում էին ոչնչացնել նրան։ Նրանք հրկիզեցին Մերվի այն գրադարանը, որտեղ աշխատում էր Իբն-Սինան։ Ապա լուր տարածեցին, թե Իբն-Սինան գրադարանն ինքն

է հրկիզել, որպեսզի իրենից բացի ոչ ոք չկարդա այնտեղի գրքերը։

Շուտ անցան Իբն-Սինայի խաղաղ կյանքի օրերը։ Մռայլ ամպերը կուտակվեցին Սամանիդյան տաջիկական պետության գլխին։ Հյուսիսից և հարավից թուրքական հրոսակները իրենց ավազակային հարձակումներով ուժասպառ արին և վերջնականապես խորտակեցին տաջիկական ծաղկուն պետությունը։ Իբն-Սինան ստիպված փախավ Խորեզմ (Ուրգենչ)։ Նա հույս ուներ այնտեղ շարունակել իր աշխատանքները։ Սակայն թշնամիների զորքերը մոտեցան նաև Խորեզմի սահմաններին և գրավեցին Ուրգենչը։

Խորեզմը նվաճող Սուլթան Մահմուդը լսել էր հռչակավոր բժշկի մասին։ Նա Իբն-Սինային հրավիրում է իր արքունիքը, խոստանալով տալ նրան աշխատելու ամեն մի հնարավորություն։ Սակայն մեծ գիտնականը չէր կարող ընդունել իր հայրենիքը նվաճողի և իր հարազատ ժողովրդին ստրկացնողի հրավերը։ Եվ, իսկապես, նա մերժեց Սուլթան Մահմուդին, մեծ դժվարություններով կտրեց անցավ Կարա-Կումի անապատը։ Իբն-Սինան գնում էր ապաստան փնտրելու Գորգանում (Կասպից ծովի հարավ-արևելյան ափին)։

Գորգանում Իբն-Սինան հատուկ բնակարան է ստանում և կարդում դասախոսություններ տրամաբանությունից, աստղաբաշխությունից և այլ առարկաներից։ Նրա աշակերտներից Ջուզջանին հետագայում խմբագրել է Իբն-Սինայի աշխատությունները։

Ֆեոդալական անընդհատ կռիվների պատճառով 1012 թվականին Իբն-Սինան ստիպված է լինում թողնել Գորգանը և հեռանալ նախ դեպի Ռեյ (այժմ Թեհրան), ապա Համադան։ Այստեղ նա համեմատաբար ավելի երկար է ապրում։ Նա լինում է նաև Սպահանում։ Բայց կյանքի վերջին տարիներին վերադառնում է Համադան և այնտեղ էլ մեռնում 1037 թվականին։

Չնայած անհանգիստ ու թափառական կյանքին, Իբն-Սինան գրել է հարյուրից ավելի գիտական աշխատություն արաբերեն ու տաջիկերեն լեզուներով, ինչպես նաև բանաստեղծություններ ու քառյակներ։ Նրա գրչին է պատկանում «Սալաման և Աբսալ» գեղեցիկ վեպը։ Այս վեպի նյութը հետո օգտագործել են Արևելքի մի շարք բանաստեղծներ։ Նա գրել է նաև շատ բանաստեղծություններ, որոնց մեջ սպանիչ կերպով ծաղրում է իր ժամանակի հետադեմ ու խավարամիտ հոգևորականությանը։

Համաշխարհային հռչակ է վայելում Իբն-Սինայի հինգ հատորանոց «Բժշկության կանոնը», որը թարգմանված է լատիներեն և այլ լեզուներով։ Փիլիսոփայական գործերի մեջ հայտնի են 18 հատորանոց «Ապաքինման գիրքը», «Գիտության գիրքը», «Փրկության գիրքը» և այլ մեծ ու փոքր գործեր տրամաբանության, ճարտասանության, ֆիզիկայի, թվաբանության, երկրաչափության, աստղաբաշխության, երաժշտության և այլ գիտությունների մասին։

Աշխարհի բոլոր թանգարաններում և մասնավորապես Մոսկվայի, Լենինգրադի, Տաշքենդի, Բուխարայի և Սովետական Միության մյուս խոշոր գրադարաններում ու ձեռագրատներում պահպանվում են Իբն-Սինայի աշխատությունների բազմաթիվ ձեռագրեր։ Դրանք այժմ էլ սիրով ուսումնասիրում են սովետական գիտնականները և արևելագետները։

Երևանի ձեռագրատանը (Մատենադարան) հին հայկական ձեռագրերի հետ միասին կան նաև տաջիկերեն, արաբերեն, պարսկերեն, ադրբեջաներեն ձեռագրեր, որոնց մեջ և Իբն-Սինայի «Փրկության գրքի» մի արժեքավոր ձեռագիր։ Դա խմբագրել է Ջուզջանին։ Այս ձեռագրի մեջ Ջուզջանին, խոսելով իր սիրելի ուսուցչի մասին, գրում է. «Նա սովորություն ուներ իր աշխատությունները սիրով տրամադրել բոլոր ցանկացողներին և չէր մերժում տալ նաև իր սեփական ձեռագրերը»։

Այստեղից երևում է, թե ինչ ազնիվ մարդ էր Իբն-Սինան, որն իր գիտության լույսն էր տարածում միջին դարերի խավարում։

Ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը սիրով և հարգանքով նշեց գիտնական ու մտածող, փիլիսոփա և բժիշկ, մեծ մարդասեր Աբու Ալի Իբն-Սինայի ծննդյան հազարամյակը։

# ԱՆՁՐԵՎ ԱՌԱՆՑ ԱՄՊԻ

Դ. ԳԱԶԱԶՅԱՆ

Մի անգամ էքսկուրսիա էինք գնացել Ուկրաինայի կոլխոզներից մեկը: Իրիկնադեմ էր: Վերջալույսի ճառագայթները ոսկեզօծել էին ցորենի դաշտերն ու մրգաստանները: Կոլխոզի վարչության նախագահ Սերգեյ Անդրեյիչի հետ մենք ման էինք գալիս կոլխոզի բերքառատ արտերում ու բանջարանոցներում: Առատ էր բերքը կոլխոզում:

Սերգեյ Անդրեյիչը, անջրանցիկ վերարկուն ուսին գցած, ցույց էր տալիս մեզ իրենց դաշտերը և բացատրում, թե ինչպիսի եռանդուն ու շնորհալի աշխատանքով են կոլխոզնիկները հասել այդպիսի առատ բերքի:

Մեր հանդիպման պահից իմ ուշադրությունը գրավել էր Սերգեյ Անդրեյիչի անջրանցիկ վերարկուն, որը ամառվա արևոտ և շոգ եղանակին նա չէր մոռացել իր հետ վերցնել: Ես իմ զարմանքը չթաքցրի: Սերգեյ Անդրեյիչը ժպտաց և կատակի տալով ասաց:

—Կարող է հանկարծ անձրև գալ, պետք է միշտ նախապատրաստված դաշտ գնալ:

— Սակայն այսօր անձրև չի գա, Սերգե՛յ Անդրեյիչ, երկնքում ամպի նշույլ անգամ չի երևում, այնպե՜ս տոթ է..

— Ո՞վ է իմանում, մեկ էլ տեսար բնությունն անձրև ուղարկեց,— կատակեց ընկերս:

— Է՜հ, Սմբա՛տ Բագրատիչ, եթե անձրևի գործը հանձնենք բնության ողորմությանը, մեր պամիդորները կչորանան... այս կարմրուկները առանց ջրի բոլորովին չեն կարող ապրել,— պատասխանեց Սերգեյ Անդրեյիչը փայփայելով «կարմրուկ» պամիդորները:

Մենք ծիծաղեցինք:

— Մեզ մոտ անձրևաբեր ամպերը կուտակվում են ընկեր Վասիլի հրամանով: Նա ուզածդ պահին կարող է առատ անձրև թափել մեր կոլխոզի դաշտերում և ձեզ նման անզգույշ մարդկանց թրջել.. ապա՛, ընկեր Վասիլ, մի զովացրո՛ւ, մեզ էլ, թույսերին էլ...

— Այս րոպեիս, ընկե՛ր նախագահ,— պատասխանեց Վասիլը և հեռացավ: Սերգեյ Անդրեյիչը անձրևից պաշտպանվելու համար հագավ իր անջրանցիկ վերարկուն:

— Շատ կատակասեր մարդ եք, Սերգե՛յ Անդրեյիչ,— ասացի ես,— իզուր տեղը ընկեր Վասիլը գնաց, հանելի խոսակից էր...

Սակայն խոսքս կիսատ մնաց: Հանկարծ արևի տակ հորդառատ անձրև սկսեց տեղալ և քիչ մնաց մենք մինչև ոսկորներս թրջվեինք: Սերգեյ Անդրեյիչը, լիաթոք ծիծաղելով, իր անջրանցիկ վերարկուն գցեց մեզ վրա:

— Կատա՞կ էիք կարծում... ա՛յ Վասիլ, դադարեցրո՛ւ անձրևը, թե չէ մեր հյուրերը հանկարծ կմրսեն ու կհիվանդանան...

— Այս րոպեիս, ընկե՛ր նախագահ,— կրկին հնչեց Վասիլի ձայնը հեռվից և անձրևը դադարեց:

— Այս ի՞նչ հրաշք է, Սերգեյ Անդրեյիչ...

— Հրաշք չէ, ընկերնե՛ր — հանգիստ պատասխանեց նախագահը, մեր դաշտերում դրված է արհեստական անձրև բերող սովետական «КДУ» «Կարճահոս Անձրևաբեր Սարքավորում», որն ուզած ժամանակ անձրև է թափում մեր դաշտերի վրա:

Անձրևաբեր սարքավորումը բաղկացած է ջրահան-ջրամղիչ կայանից, ջրատար խողովակներից և անձրևաբեր կոնաձև ցնցուղներից: Կայանը տեղավորում են լճակի, ջրհորի և գետի ափին նախապես ցեմենտից պատրաստված հիմքերի վրա: Նա կարող է աշխատել և՛ կայուն էլեկտրահոսանքով, և՛ ջերմային շարժիչներով, որոնց աշխատեցնում են սովորական նավթով, բենզինով կամ դիզելային վառելանյութով:

Անձրևաբեր մեքենան կարելի է աշխատեցնել նաև տրակտորների միջոցով: Ջրահան խողովակը մտցված է ջրի մեջ, իսկ ջրազտիչը դեպի ջրման ենթակա դաշտերն ու բանջարանոցները տարված խողովակները:

Այդ խողովակները դաշտում տեղավորված են մեկը-մյուսից 10 մետր զուգահեռ լայնությամբ և 240 մետր երկարությամբ մեկ մետր բարձրության հենակների վրա: Խողովակների վրա, միմյանցից 10 մետր հեռավորությամբ, դեպի երկինք տարված են կոնաձև ցնցուղները: Բավական է շարժիչը գործի և կայանն աշխատի, որպեսզի ջրահան պոմպը ջուրը հորից, լճից կամ գետից ներծծի և մղի դեպի դաշտը գնացող խողովակները: Դրանից հետո, ուզածդ ժամանակ, կարող ես բաց անել ցնցուղները և իսկական անձրև թափել դաշտի ցանկացած տեղամասում:

— «Մենք բնությունից ողորմություն չենք ուզում, նրանից այդ վերցնելը մեր խնդիրն է», ասել է բնության մեծ վերափոխիչ Միչուրինը,—եզրակացրեց Սերգեյ Անդրեյիչը հատ-հատ ընդգծելով այդ խոսքերը:

Մենք դեռ դաշտում էինք, երբ Վասիլը նորից գործի գցեց անձրևաբեր սարքավորումը:

Բնությունն իրենց կամքին ենթարկած մարդիկ, արևի տակ անձրև էին թափում բերքառատ դաշտերի վրա:

Իսկ ես մտածում էի.

— Այ ի՞նչ տեսակ մարդիկ են Սերգեյ Անդրեյիչն ու նրա կոլտնտեսականները:

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ դրուժիններում և ջոկատներում

## ՆՈՐ ՈՒԺԵՐՈՎ

Անցյալ տարի ես օղակավար ընտրվեցի: Ես զգում էի, որ ինձ վրա լուրջ պարտականություն է դրված, բայց միաժամանակ գիտեի, որ ինքս մենակ քիչ բան կկարողանամ անել: Մենք գործի կպանք ամբողջ օղակով: Նախ խոսք տվեցինք ոչ մի վատ չստանալ և մեր խոստումը կատարեցինք: Մենք հաճախակի էքսկուրսիաներ էինք կազմակերպում և միասին կինոդիտման գնում: Մեր օղակը տարվա ընթացքում ֆոտոալբոմներ է կազմել, ամառը կոլեկցիաներ և հերբարիումներ է հավաքել հարազատ դպրոցի համար:

Տարեվերջի քննություններին մեր օղակը լավ նախապատրաստվեց, այդ էր պատճառը, որ մեզանից ոչ ոք «2» գնահատական չստացավ:

Այս բոլորի մասին ես պատմեցի մեր օղակի հաշվետու հավաքույթում: Մեր օղակի պիոներները խոսք տվեցին այս տարի ևս բարձր պահել օղակի պատիվը՝ տարվա ընթացքում միայն լավ սովորել, օգնել ետ մնացող ընկերներին: Ես համոզված եմ, որ մենք մեր խոստումը կկատարենք:

Օղակը այս տարի նորից ինձ օղակավար ընտրեց: Ես ամեն ջանք գործ կդնեմ, որպեսզի արդարացնեմ օղակի վստահությունը:

*ԼԵՆԱ ԴԱՆԻԵԼՅԱՆ*

*(№ 28 դպրոցի 7-րդ ջոկատի առաջին օղակի օղակավար)*

## ՀԱՄԵՐԱՇԽՆԵՐԻ ՋՈԿԱՏԸ

Ջոկխորհրդի նախագահ Լուիզա Փանոսյանը զեկուցում էր ջոկատի կատարած մի տարվա աշխատանքների մասին: Պիոներները լուռ լսում էին և միաժամանակ պատկերացնում այն բոլորը, ինչի մասին պատմում էր նա: Բոլորի հիշողության մեջ դեռ թարմ էր Լուիզայի պատմածը՝ հետաքրքրական հավաքույթներ, էքսկուրսիաներ, զբոսանքներ, ներկայացումներ, հանդիպումներ և զրույցներ: Լսուրան




Պռոշյանի անվան դպրոցի ջոկատի նորընտիր խորհրդի նախագահ Ռիմա Հովհաննիսյանը անց է կացնում ջոկատի խորհրդի առաջին նիստը: Ֆոտո Ա. ՀԵՔԵՔՅԱՆԻ

պատմում է այն մասին, թե ինչպես է ջոկատը պայքարել ուսման որակի բարձրացման համար: Դեռ առաջին քառորդում նկատվեց, որ 5-րդ Գ դասարանում դրությունն այնքան էլ լավ չէ: Հայտնվեցին շատ «երեքներ» և նույնիսկ «երկուսներ»: Պիոներներից բոլորը չէին, որ ուշադիր էին դասերի ժամանակ: Մի քանիսը նույնը դնում էին «հուշարարների» վրա, իսկ մշտական «հուշարարներ» նույնպես երևացին դասարանում: Դասարանում հաճախ էր լսվում Մովիկի շշուկը: Ջոկատի խորհուրդը ժամանակին նկատեց այս և միջոցներ ձեռք առավ:

Կազմակերպվեցին գրույցներ պիոներական պատվի, ճշտապահության, ընկերության և բարեկամության մասին: Այդ հարցում պիոներներին շատ օգնեց դաստիարակ ընկեր Աղավնի Բեքարյանը:

Ջոկատի ջանքերով վերացան «երկուսները»: Պիոներներն սկսեցին բարձր գնահատականներ ստանալ

Լուիզայի զեկուցումից հետո ելույթ ունեցան պիոներները: Նրանք լրացրին զեկուցողին, նոր առաջարկություններ արեցին: Նորընտիր ջոկխորհրդի նախագահ վերընտրվեց Լուիզա Փանոսյանը: Ջոկխորհուրդը հենց առաջին օրից ձեռնամուխ եղավ աշխատանքներին:

Ռ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՆՐԱՆՔ ԲՌՆՑՔԱՄԱՐՏԻԿՆԵՐ ԵՆ

*Բարձր և սաղարթախիտ հովանու տակ բռնցքամարտ է: Առողջ, ուժեղ, մկանոտ պատանիները հարվածում են իրար, պաշտպանվում, իրարից երբեմն հեռանում են, երբեմն ընդհուպ մոտենում, համարյա գրկախառնվում: Անմիջապես նրանց է մոտենում աչալուրջ հսկող, թիմի մարզիչը: Նա միջամտում է, խորհուրդներ տալիս և բռնցքամարտը վերսկսվում է:*

*Բրոնզագույն և պիրկ մարմիններից քրտինք է թափվում: Թվում է, թե մեկն ու մեկը կդադարեցնի մարտը, բայց նրանք հոգնել չգիտեն: Ճարպկությամբ խուսափելով հարվածից, նրանք պտույտ են գալիս միմյանց շուրջը և ուժեղ հարվածներ տեղում իրար վրա:*

*Դա Հայաստանի պատանի բռնցքամարտիկների թիմն է, որ վերջերս Համամիութենական մրցումներում պատվավոր տեղ գրավելուց հետո պատրաստվում է նորանոր հաղթանակների:*

*— Պատանի բռնցքամարտիկների 1952 թվականի առաջնության մրցումները տեղի ունեցան Լիտվայի մայրաքաղաք Վիլնյուսում.— իմ հարցին պատասխանում է թիմի ավագ մարզիչ, սպորտի վաստակավոր վարպետ Է. Արիստակեսյանը:— Մրցումներին մասնակցում էին միութենական ռեսպուբլիկաների և Մոսկվայի ու Լենինգրադի 18 թիմ: Հայաստանի պատանի բռնցքամարտիկները պատվով պաշտպանեցին իրենց ռեսպուբլիկայի սպորտային պատիվը և մրցություններում գրավեցին երկրորդ տեղը, առաջին տեղը զիջելով Մոսկվայի թիմին:*

*Մարզիչը հայացքը դարձնում է պարապողների վրա: Մարտը շարունակվում է. տղաների շնչառությունը ծանրացել է, բայց ոչ մեկը չի ուզում տեղի տալ:*

*— Ա՛յ, այն երկուսը չեմպիոններն են՝ Ազիզյան Յուրիկը և Թովմասյան Տոնապետը: Նրանք հաղթանակ տարան իրենց բոլոր հակառակորդների դեմ և գրավեցին առաջին տեղերը: Հետաքրքիր էր Յուրիկի հանդիպումը էստոնիայի չեմպիոն Ռոզիստեի հետ: Այդ տաքարյուն պատանին ամբողջ երեք ռաունդ հանգիստ չտվեց իր հակառակորդին: Լարված պայքարով անցավ նաև Թովմասյան Տոնապետի մրցումը Մոսկվայի չեմպիոն Գարադեևի դեմ: Հայաստանի երկու պատանի բռնցքամարտիկներն էլ կրկնվող նոկդաունով իրենց հակառակորդներին ստիպեցին դադարեցնել դիմադրությունը: Այսպիսով, իրենց խաղերում նրանք դարձան Սովետական Միության չեմպիոններ:*

*Մեր ուշադրությունը գրավեց մի ուրիշ զույգ էլ: Նրանք այնքան էին տաքացել, որ թիմի երկրորդ մարզիչ, սպորտի վարպետ Ա. Հարությունյանը հազիվ կարողացավ նրանց բաժանել միմյանցից: Դրանք Ստամբոլյան Հարությունը և Փափազյան Միշան էին: Մրցումներին նրանք գրավել են երկրորդ տեղերը, շատ քիչ բանով զիջելով իրենց հակառակորդներին:*

*— Ուժեղ հակառակորդ ուներ Ստամբոլյանը,— ասում է մարզիչը,— Վրաստա-*

նը ներկայացնող Լոմիձեն երկու տարի եղել էր Սովետական Միության չեմպիոն։ Երկարատև և համառ պայքարը ոչ մեկին գերակշռություն չէր տալիս։ Դատավորները չէին կարողանում կողմնորոշվել, իսկ ժամանակը վերջանում էր։ Լոմիձեն առաջին տեղը գրավեց մի .փոքր առավելությամբ միայն։ Մոտավորապես նույն արդյունքն է ունեցել Փափազյանի հանդիպումը Ղազախստանի չեմպիոն Գարիմովի հետ։

Գալիս է երեկոն։ Ծառերի ստվերները երկարում են ամբողջ բակով մեկ։ Շարունակվում է պատանի բռնցքամարտիկների պարապմունքը։



Պատանի բռնցքամարտիկները պարապմունքի ժամին

Ֆոտո Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Պարապմունքն ավարտվում է։

— Հարո՛ւթ,— կանչում է Արիստակեսյանը։ Դեռևս ծանր շնչելով մոտենում է իր տարիքի համար բարձրահասակ, ժպտադեմ, բայց ամաչկոտ հայացքով առողջ մի պատանի։ Մարզված լայն կուրծքը համաչափ իջնում ու բարձրանում է։

— Հարո՛ւթ,— ավելի մեղմ և հոգածու ասում է մարզիչը,— անցեք դուշի տակ, քրտնած մի՛ կանգնեք։

Պատանիները հեռանում են։

— Հիանալի բռնցքամարտիկներ կդառնան,— ասում է Արիստակեսյանը նայելով նրանց ետևից,— անհրաժեշտ է, որ նրանք կանոնավոր կերպով պարապեն, տիրապետեն մարտը վարելու տեխնիկային։ Դեռևս տարվում են իրենց պատանեկական եռանդով, ուշադրություն են դարձնում հարձակողական մարտի վրա և նույնքան չեն մտածում հարձակումից հետո պաշտպանողական մարտով ետ քաշվելու տեխնիկային տիրապետելու մասին։

Մարզիչի աչքերը գուրգուրանք են արտահայտում իր սաների մասին խոսելիս։ Նա սիրում է նրանց հարազատ մեծ եղբոր նման և նրանցով հպարտանում է։

— Ա՛յ, հետաքրքիր ուղի անցան Ստամբոլյանը և Փափազյանը,— նորից խոսում է նա.— երկու տարի առաջ նրանք սկսեցին պարապել։ Առողջ, բայց բոլորովին չմարզված պատանիներ էին, մեկը եկած Ֆրանսիայից, մյուսը՝ Հունաստանից, որտեղ նրանք ոչ մի հնարավորություն չէին ունեցել զարգացնելու իրենց ընդունակությունները։ Մեր երկրում նրանց առջև լայն հնարավորություններ բացվեցին։ Նրանք իրենց խաղերում գրավեցին երկրորդ տեղերը. ես վստահ եմ, որ ավելի համառ և ուշադիր աշխատանքով նրանք ավելի լավ արդյունքների կհասնեն։

Տղաները վերադառնում են լողացած ու թարմացած։ Մենք Աբովյանի փողոց ենք դուրս գալիս և խառնվում ենք ժողովրդի խուռն բազմությանը։ Ես նայում եմ պատանիների այս առողջ խմբին և հավատում եմ, որ հետագա հանդիպումների ժամանակ նրանք պատասխանատվության ավելի մեծ զգացումով կպաշտպանեն ռեսպուբլիկայի սպորտային պատիվը։

ԳՐ. ՔԵՇԻՇՅԱՆ

# ԵՐՋԱՆԻԿ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Խոսք՝ Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

Երաժշտություն՝ Ա. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

ՔԱՅԼԵՐԳԱՆՄԱՆ

Մենք կդառնանք գիտնականներ,
Քաջ մարտիկներ, մեքենավար,
Մենք կդառնանք շինարարներ,
Օդաչուներ ու նավավար:
Կրկներգ.— Քայլենք առաջ և այլն...

Մեր ճամփան է լուսավորում
Առաջնորդը Մեծ իմաստուն.
Մենք ուզում ենք, որ աշխարհում
Լինի հավետ խաղաղություն:
Կրկներգ.— Քայլենք առաջ և այլն...

# ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

## «ՄԵՌՅԱԼ ՔԱՂԱՔՆԵՐԸ» ԹՈՒՆԻՍՈՒՄ

Մեր թվականությունից առաջ երկրորդ դարում հռոմեացիները կործանել են Կարթագենյան պետությունը, որ Հյուսիսային Աֆրիկայում ստեղծել էին փյունիկեցիները: Այժմյան Թունիսի տերիտորիայի հյուսիսային կեսը եղել է հռոմեական պրովինցիա, որը կրել է «Աֆրիկա» անունը: Հռոմեացիներն այստեղ հիմնել են հողագործական գաղութներ, կառուցել մոտ 30 քաղաք, անց են կացվել ճանապարհներ, շինվել են հիդրոտեխնիկական կառուցվածքներ: Հին Կարթագենից այժմ շատ քիչ հետքեր են մնացել: Մեծ հետաքրքրություն են ներկայացնում Կարթագենի, Մակտարի, էլ-Ջեմի հին հռոմեական շենքերի փլատակները: Երկրի ծովափում և հովիտներում մինչև հիմա էլ կարելի է տեսնել ամֆիթատրոնների, տաճարների, հաղթական կամարների, քարե կամուրջների և ուրիշ կառուցվածքների մնացորդներ:

Ֆրանսիական գաղութարարները բոլորովին չեն մտածում պահպանել հնության այս հուշարձանները: Դրանք շարունակում են քայքայվել, ծածկվել ավազով ու խոտով. «մեռյալ քաղաքների» քարերը հանցագործ կերպով օգտագործվում են որպես շինանյութ:

## ՃԱԳԱՐՆԵՐԸ ՎՆԱՍԱՏՈՒՆԵՐ

Երբ 1859 թվականին ճագարներն առաջին անգամ Ավստրալիա բերվեցին, ֆերմերները շատ ուրախացան: Ճագարներն այն ժամանակ եկամտի լավ աղբյուր էին: Բայց երկու տասնյակ տարի անց պարզվեց, որ շուտ բազմացող և շատակեր այդ կենդանիները մեծ վնաս են հասցնում երկրի տնտեսությանը: Նրանք ոչնչացնում են ցանքերը, խժռում բուսականությունը և պատճառ են դառնում հողի քայքայմանը:

Սկսվեց կատաղի պայքար ճագարների դեմ: Սակայն ոչինչ չի օգնել և չի օգնում, ոչ 1909 կիլոմետր երկարությամբ, ամբողջ մայր ցամաքը կտրող պաշտպանական ցանցը, ոչ էլ ճագարների որջերի ոչնչացումը:

Այժմ Ավստրալիայում 400 միլիոն ճագար կա: Այսպիսով, ճագարները Ավստրալիայում շատության պատճառով դարձել են վնասատուներ:



## ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ 1953 ԹՎԱԿԱՆԻՆ

1950 թվականին Մոսկվայի մեծ շենքերից մեկում կառուցվել է հեռուստատեսային տրանսլյացիոն սեփական հանգույց: Այդ հանգույցը լարերով կապված է բոլոր բնակարանների հետ: Անհրաժեշտ է «էկրան-ռեպրոդուկտորը» միացնել տրանսլյացիոն գծին և էկրանի վրա պատկերվում է հաղորդումը:



Հեռուստատեսային ռեպրոդուկտորը պարզ կառուցվածք ունի, մի հասարակ տուփ է, որի մեջ ամրացված են դինամիկն ու կինեսկոպը:

Եկող տարի մայրաքաղաքի հրապարակներից մեկում մոսկվացիները կտեսնեն մի հսկա էկրան (3×4 մետր) և նրանց կթվա, թե փողոցում կինոնկար է ցուցադրվում: Բայց ոչ, դա հեռուստատեսային ապարատն է գործում: 1953 թվականին մի նորություն էլ կսկսվի՝ գունավոր հեռուստատեսությունը:

Սովետական ռադիոտեխնիկները նոր միջոցներ են փնտրում հեռուստատեսությունը լայնորեն տարածելու համար: Մոտ ապագայում միանգամից 3 ծրագիր հաղորդող հեռուստատեսային տիպային կենտրոններ կկառուցվեն միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, իսկ փոքր հզորության կենտրոններ՝ շրջաններում: Հնարավոր կլինի հաղորդումներ կազմակերպել մեր հայրենիքի հեռավոր անկյուններում:

Գ. ՏԵՐԵՇԵԹՅԱՆ

Գինը 2 ռ.

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Ջրային տուրբինի ստեղծողը

Այս խնդիրը լուծելով դուք կկարդաք ռուսականավոր ճիղրոտեխնիկի, ջրային տուրբինի ստեղծողի անունը և ազգանունը: 1837 թվականին նրա ստեղծած տուրբինը գերազանցում էր Ֆուրնեյրոնի տուրբինին և իր ժամանակին եղել է աշխարհում լավագույն ջրային տուրբինը: Մտածեցեք, թե ի՞նչպես կարդալ խնդիրը:




## Լրացրեք թվերը

Աշակերտը գրատախտակի վրա կատարեց երկու եռանիշ թվով մի բազմապատկում, ապա սրբեց թվերը, բացի երկուսից, մեկ ութից և իննից: Ջնջված ամեն մի թվանշանի տեղը մի կետ դրեց:




Դրանից հետո բազմապատկման գործողությունը ընդունեց նկարում պատկերված տեսքը:

Վերականգնեցեք և ասացեք, թե ի՞նչ երկու եռանիշ թվեր են այստեղ բազմապատկված:

## Փոքրիկ խնդիրներ

1. Երբ մենք ներքևից դիտում ենք երաժշտության տակ քայլող զինվորներին, մեզ թվում է, թե նրանք տակտով չեն քայլում: Ինչո՞ւ:

2. Ե՞րբ է կրակոցի ձայնը լավ լսվում, մառախլապատ, թե՞ պայծառ եղանակին:

3. Ինչո՞ւ խոնավ եղանակին լապտերների շուրջը լուսապսակներ ենք տեսնում:

## Կրիայի ուղին

Սև կրիան շարժվում է դեպի սպիտակը: Ճանապարհին նա մեկ առ մեկ պետք է անցնի բոլոր վանդակները առանց որևէ տեղ իր ուղին հատելու:

Ի՞նչպես պետք է գնա կրիան:



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագիր՝ ՍԵՎՈՒՆՑ Գ.

Խմբագրական կոլեգիա՝ ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 06732, Պատվեր 506. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Ստորագրված է տպագրության 15/V- 52

Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.




## Ստեփան Շահումյան

1878 թվականի նոյեմբերի մեկին ծնվել է Ստեփան Շահումյանը: Շահումյանը եղել է Լենինի և Ստալինի հավատարիմ աշակերտն ու զինակիցը: Իր ամբողջ կյանքը նա նվիրել է ռևոլյուցիայի հաղթանակի գործին, կոմունիզմի մեծ գործին:

Շահումյանը ռևոլյուցիոն աշխատանք է տարել աշակերտական



տարիներից սկսած: 1900 թվականին նա արդեն Ռուսաստանի Սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի անդամ էր: Ռևոլյուցիոն շարժմանը մասնակցելու համար 1902 թվականին Շահումյանը հեռացվում է Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտից: Նա մեկնում է արտասահման, որտեղ և ծանոթանում է Վ. Ի. Լենինի հետ:

1904 թվականին Շահումյանը վերադառնում է Անդրկովկաս: Անդրկովկասում Շահումյանը ընկեր Ստալինի ամենամոտ բարեկամն էր և օգնականը: 1905 թվականի ռևոլյուցիայի ժամանակաշրջանում ընկեր Ստալինի ղեկավարությամբ նա կազմակերպում է Անդրկովկասի բանվորների ռևոլյուցիոն պայքարը ցարի և բուրժուազիայի դեմ: Ռևոլյուցիոն գործունեության համար Շահումյանը մի քանի անգամ բանտարկվել է և աքսորվել: Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո ընկեր Ստալինի առաջարկությամբ Շահումյանը նշանակվում է Անդրկովկասի Արտակարգ Կոմիսար:

Ծանր էր այդ ժամանակ դրությունն Անդրկովկասում. ներսից Անդրկովկասի ժողովուրդների թշնամիները՝ մենշևիկները, դաշնակները և մուսաֆաթները, դրսից՝ անգլիական և թյուրքական իմպերիալիստները փորձում էին խեղդել ռևոլյուցիան Անդրկովկասում: Անգլիական գաղութարարներին հաջողվում է մտնել Բաքու: Նրանք Բաքվի 26 կոմունարներին՝ Շահումյանին, Ջափարիձեին, Ազիզբեկովին, Ֆիոլետովին և մյուսներին բանտարկում են, գաղտնի հեռացնում Բաքվից և գնդակահարում Թուրքմենիայի ավազուտներում:

Անդրկովկասի ժողովուրդները շարունակում են 26 կոմունարների գործը: Նրանք այժմ կոմունիզմ են կառուցում և միշտ վառ են պահում ռևոլյուցիայի մարտիկների, 26 կոմունարների անմահ հիշատակը:

## Դնեպրոգէս

1927 թվականի ապրիլին «Պրավդայում» տպագրվեց մի լուսանկար, որ ներկայացնում էր մի ամայի



կղզի: Այդ կղզում կառուցվելու էր Դնեպրի հիդրոէլեկտրակայանը: Նույն ամսից սկսվեցին կառուցման աշխատանքները: Նախատեսնվում էր կայանն ավարտել և շահագործման հանձնել 1932 թվականի դեկտեմբերի մեկին:

Ամերիկացի մասնագետները փորձում էին ապացուցել, որ Սովետական երկիրը տեխնիկապես անկարող է ավարտել այդպիսի կառուցում:

Բայց 1932 թվականի մայիսի մեկին շահագործման հանձնվեց Դնեպրի հիդրոկայանը: Այն ամենահզոր էլեկտրակայանն էր աշխարհում, ուներ 810 հազար ձիու ուժ: Միաժամանակ 2000 կիլոմետր երկարությամբ նավարկելի էր դարձել Դնեպրը:

Սովետական ժողովուրդն այժմ կառուցում է հզորագույն էլեկտրակայաններ՝ Կույբիշևի, Ստալինգրադի, Կախովկայի կայանները: Այս շարքում իր պատվավոր տեղն է գրավում Դնեպրի հիդրոկայանը:

## Ֆ. Ֆ. Ուշակով

Հոկտեմբերի 14-ին լրացավ ռուս մեծ ծովակալ Ֆեոդոր Ֆեոդորովիչ Ուշակովի մահվան 135 տարին:



Ֆ. Ֆ. Ուշակովը ծնվել է 1745 թվականին: Տասնվեց տարին չլրացած նա մտնում է Պետերբուրգի ծովային կորպուսը: Այդ ժամանակից սկսած Ուշակովը մասնակցում է մի շարք ծովային կամպանիաների:

Դեռևս ռուս-տաճկական առաջին պատերազմում (1768—1774 թ. թ.) Ուշակովն աչքի է ընկնում ծովային իր ընդունակություններով, տոկունությամբ: Ռուս-տաճկական երկրորդ պատերազմում (1787—1791 թ. թ.) տարած հաղթանակներով Ուշակովը հռչակվում է ամբողջ Եվրոպայում: Կալիակրիի մոտ մղած նրա ծովային մարտը ստիպեց թյուրքերին հաշտություն խնդրել Ռուսաստանից:

Հետագայում Ուշակովը շատ ավելի խոշոր հաղթանակներ տարավ Նապոլեոնի դեմ: Պարտության մատնելով ֆրանսիական ծովային ուժերին Ուշակովն ազատագրեց Հռոմը, Նեապոլը և այլ քաղաքներ:

Ուշակովն իր ժամանակակից Սուվորովի նման մեծ հայրենասեր էր և ինչպես Սուվորովը, ենթարկվում էր ցարի և ազնվականության հալածանքներին: Իր կյանքի վերջին 10 տարին Ուշակովն անցկացրեց աղքատության մեջ, մենակ և մոռացված:

Միայն Սովետական կարգերում է, որ գնահատվում է Ուշակովի մեծ տաղանդը, նրա ծառայությունները հայրենիքին:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՆ ԻՐԱԳՈՐԾՎՈՒՄ Է

«Գործարկել խոշոր հիդրոէլեկտրակայաններ, այդ թվում Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը 2.100 հազար կիլովատ կարողությամբ, ինչպես նաև Կամայի, Գորկու, Մինգեչաուրի Ուստ-Կամենոգորսկի և այլ էլեկտրակայաններ 1.916 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ: Կառուցել և գործարկել Կույբիշև-Մոսկվա էլեկտրահաղորդման գիծը»:

(ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԻՑ)



Հզոր հողափոր մեքենա «Պյատիլետկան», որը գործում է Կույբիշևի հիդրոկայանի փոսորակում:



Ամեն օր Կույբիշևի հիդրոհանգույց են գալիս նորագույն տեխնիկայով բեռնված գնացքներ: Նկարում՝ Մինսկի ավտոգործարանի ինքնաթափերը Ժիգուլի կայարանում:

(Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ)